# ՊԻՈՆԵՐ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ:

ՀԱՍՑԵՆ՝ 375015, ԵՐԵՎԱՆ 15, ԿԱՐՄԻՐ ԲԱՆԱԿԻ ՓՈՂՈՑ № 15: ՀԵՌԱԽՈՍՆԵՐ՝ 56—32—72, 58—08—33, 56—14—96, 56—43—38:

«Пионер». На армянском языке. Ежемесячный детский журнал ЦК ЛКСМ Армении и Республиканского Совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375015, Ереван-15, ул. Кармир банаки, № 15.

Լույս է տեսնում 1923 թվականից


## Այս համարում 1.88




*Հանձնված է արտադրության 02.11.87 թ.: Ստորագրված է տպագրության 07.01.88 թ.: Թուղթ օֆսեթ, 70×100 1/16: Տառատեսակը՝ Նորք: Օֆսեթ տպագրություն, 2,92 պայմ. մամ., 3,9 հրատ. մամ.: Տպաքանակ՝ 65332: Պատվեր՝ 2160: Գինը՝ 15 կոպ.:*

***Տպագրված է ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարանում, Օրջոնիկիձեի պողոտա 2:***

Сдано в набор 02.11.87 г. Подписано к печати 07.01.88 г. Формат 70×100 1/16. Бумага офсетная. Гарнитура «норк». Офсетная печать. 2,92 усл. печ. листа, 3,0 уч.-изд. листа. Тираж 65332. Заказ 2160. Цена 15 коп.

**Напечатано в типографии изд-ва ЦК КП Армении. пр. Орджоникидзе, 2.**

**Շապիկի 1-ին և 4-րդ էջերին՝**

**ՀԱՐՈՒԹՅՈՒՆ ԿԱԼԵՆՑ (1910—1967 Թ.) «ՀՐԱԶԴԱՆԻ ԱՓԻՆ», 1961 Թ., «ԿԱԿԱՉՆԵՐ», 1964 Թ.:**


ՎԻԼՅԱՄ ՍԱՐՈՅԱՆ

# Դպրոցը

Նկարը՝ ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ

Ամենաճշմարիտը կյանքի առաջին տասը տարիներն են: Հատկապես առաջին վեցը, թեև սրանից էլ սկզբի երեքը ջընջվում են հիշողությունից և միայն շատ ծերանալիս ես մտաբերում՝ պատկեր առպատկեր միակցելով:

Երեքից մինչև յոթ տարին, ճիշտ է, հիշվում է, բայց միայն մեծ ճիգերից հետո, քանի որ ոչ շատ մեծ ես, ոչ էլ փոքրր, ու առաջվա պես միշտ տանը չես մնում և, առավելություն ունենալով երկու քույրերից ու եղբորդ նկատմամբ, քեզ ընտանիքի լիիրավ անդամներից մեկն ես համարում:

Յոթ տարեկան· այնքան էլ շատ չէ, թեև երեխայի բնավորությունը հենց այդ տարիքում է ամրանում, իսկ մնացյալը՝ ժամանակի ու շարժման խնդիր է: Եթե պատահի այնպես, որ երեխան ընտանիքի հետ այլ քաղաք գնա, նրա կյանքի ուղին բոլորովին կփոխվի:

Բանից պարզվեց, որ այդ բոլորը մեկ տարվա մեջ պիտի կատարվեր, իսկ տեղափոխությունը եղավ դեպի հարավ՝ երկու հարյուր մղոն, գնացքով· Օկլանդից դեպի Ֆրեզնո, ապա նորից ետ՝ ծննդավայր:

Յոթից մինչև տասը տարեկան շատ է դժվար երեխայի համար, որովհետև դըպրոց գնալ կա… գրել-կարդալ… Ինձ թըվում էր՝ գլուխ չէի հանի նման գործերից, բայց, ճիշտն ասած, չէի ուզում դմբոյի անուն հանել: Ուղղակի ամեն ինչ չէր, որ կարողանում էի մյուսների պես հասկանալ:

Փառք աստծո, որոշ ժամանակ անց ես էլ գրել-կարդալ սովորեցի: Իսկ դա կատարվեց միանգամայն հանկարծակի ու պարզ: Ինչ որ է, ես ինձ հրաշալի էի զգում, որովհետև գրել-կարդալ գիտեի:

Իմ ձեռագիրը ոնց որ թե ամենալավն էր դպրոցում, իսկ շարադրություններս բավականություն էին պատճառում ուսուցիչներիս. թեև մի քանիսը կարծում էին, թե նախադասություններս շատ են երկար, իսկ մտքերս… Նրանք ուղղակի դեմ էին իմ կարծիքներին: Օրինակ, գըրում էի՝ թող հարուստը իրեն մարդավարի պահի աղքատի հանդեպ, որովհետև հենց այդ աղքատը կարող է նըրանից մեծահարուստ դառնալ: Թող ամբարտավանը մի քիչ զգույշ լինի. ով գիտե, մեկ էլ տեսար նրա նկատմամբ շատերը այնպիսի ամբարտավանություն անեն, որ մտքովն էլ չանցնի: Բախտավորները, որոնց թիվն, ավաղ, այնքան էլ շատ չէ, իրենց բախտը կիսեն մյուսների հետ, միայն թե առանց ցուցամոլության:

Այնուամենայնիվ, երբ հասկացա՝ ինչպես գրել, զգացի, որ բան ունեի ասելու, պիտի քարոզեի՝ քարոզեցի, բայց ուսուցիչներիցս ոմանք դա համարեցին պարտազանցություն: Հիսուն բառն ինձ բավական էր, որպեսզի շարադրություն գրեի՝ «Ինչպես անցկացրի արձակուրդս» վերնագրով: Ու ոչ թե հինգ հարյուր բառ, որ ֆրեզնոցիների համար, ինձ թվում է, շա՜տ-շատ է:

Մի ուսուցչուհի ունեինք՝ միսս Քլիֆֆըրդ ազգանունով: Նրա դասերը հաճելի էին անցնում, բայց այդ կինն ինձ չէր սիրում, որովհետև տարօրինակ հարցեր էի տալիս, և խեղճը շփոթվում, չէր կարողանում պատասխանել:

Մինչդեռ մյուս ուսուցչուհիները՝ միսս Չեմբըրլինն ու միսս Քարմիքըլը, այլ կերպ էին հուզվում: Իսկ միսս Թոմսընի կարծիքով ինքն էր ինձ հայտնագործել. խոստովանում եմ՝ դա ճիշտ էր, թեև ինձ համար շատ քիչ նշանակություն ուներ:

Մի առավոտ մտավոր ընդունակությունների փորձարկում կատարեցին դասարանի առջև. պատասխաններս լուծել էր միսս Թոմսընը: Ծանոթահար ու զարհուրած՝ նա անմիջապես ուզել էր ինձ տեսնել: Եվ գրիչ տղան դասարան եկավ, միսս Քլիֆֆըրդին երկտող տվեց, ու նա պատվիրեց ինձ փոքրիկ պորտուգալուհու և այդ տղայի հետ գնալ միսս Թոմսընի մոտ:

— Ի՞նչ է ասում,— հարցրի:

— Հետո կիմանաք:

Այս անգամ ի՞նչ էի արել:

Այն պահին, երբ մտա միսս Թոմսընի սենյակը, նա իմ գրած պատասխաններն էր ստուգում: Իսկույն ճանաչեցի ձեռագիրս ու մտածեցի. «Երևի սխալ եմ արել: Ստիպելու է նորից գրեմ…»:

— Ուրեմն դուք Վիլյամ Սարոյա՞նն եք:

— Այո, միսս:

Շատ փարթամ կին էր միսս Թոմսընը՝ մոտ քառասուն տարեկան, առիթի դեպքում կարողանում էր ուրախ-զվարթ կատակներ անել:

Նա մի պահ ինձ նայեց, բայց ոնց որ ինձ նայելիս չլիներ, հետո ասաց.

— Այո… Ուրեմն այդպես…

— Որևէ սխա՞լ եմ թույլ տվել, միսս:

— Իմ կարծիքով… այո… Բայց դա էական սխալ չէ: Շատ լավ, իսկ հիմա դասարան գնացեք:

Գնացի դասարան:

Հենց այդ երեկո միսս Թոմսընին հանդիպեցի Վան Նեսս պողոտայում, որ գտնվում է «Ազատություն» թատրոնի կողքին՝ «իմ անկյան» դիմաց: Այն անկյունը, որտեղ լրագիր էի ծախում, Բոուվըլլ Բիլդինգի դիմացն էր, Ֆրեզնոյի «Հանրապետական» շենքի մոտ: Դա քաղաքի լավագույն անկյուններից էր: Որպեսզի այնտեղ կանգնելու թույլտվություն ունենայի, ամեն օր ամենաքիչը քառասուն հատ լրագիր պիտի ծախեի: Ձայնս գլուխս գցած՝ վերնագրերն էի բղավում, և, անցորդների քթի տակ թափահարելով լրագրերը, ասում էի.

— Լրագիր չե՞ք ուզում, միստր… Լրագիր չե՞ք ուզում, միսիս…

Մի օր, այդպես բղավելով, միսս Թոմսընին տեսա փողոցով անցնելիս: Նա կանգնեց դիմացի մայթին, հապշտապ մոտենալով ինձ, ասաց.

— Վիլյամ Սարոյա՜ն…,— և արագ հեռացավ:

Ուրեմն, նա ինձ տեսավ լրագիր ծախելիս: Պա՜հ, ինչ անենք: Ավելի լավ իր համար:

Միսս Չեմբըրլինն էլ շատ էր հրապուրիչ. բարեձև կազմվածք ուներ և սիրում էր մտքեր ուղղել իմ կողմը ու հետևել, թե ինչպես էի վարվում դրանց հետ: Խոսքը մեր մեջ՝ մի քիչ էլ հետս սիրաբանում էր, բայց դե ինչ, այն ժամանակ դմբոյի մեկն էի: Նա ինձ դուր էր գալիս, բայց չգիտեի հետն ինչպես վարվել:

Հետո, բոլորովին անսպասելի- նա սկսեց հաճույք ստանալ ինձ պատժելով: Անկյուն էր կանգնեցնում, դասերից հետո պահում: Ճիշտն ասած՝ կարևոր բան չկար, բայց պահում էր ու կարգադրում, որ խնամով լաթով գրատախտակը մաքրեմ, իսկ ինքը իր աշխատանքից, քաղաքի գաղթական երեխաներից էր խոսում, որոնց ուզում էր դաստիարակել: Այդ երեխաները մեծ մասամբ հայեր էին, սիրիացիներ, ասորիներ... Թուխ աչքերով, թխամորթ երեխաներ էին, որոնց շատ դժվար էր հասկանալ: Եթե հաջողվում էր մի կերպ մտերմանալ նրանց հետ, էլի նոր որ մեզ հետ չլինեին. ուրիշ երկրում էին ապրում և ոչ թե Ֆրեզնոյում, որտեղ ծնվել էին ու մեծացել:

Իսկ ես այդպես էլ չհասկացա. ինչո՞ւ էի նրանց քաջալերում, որ շարունակեն ապրել իրենց ցեղին յուրահատուկ կյանքով, փոխանակ արթնացնելով իրենց դարավոր նիրհից, համոզել, որ իրենց **երգիրը** ոչ թե այն հեռավոր վերհուշն է, այլ այս իրապաշտ քաղաքը, որտեղ ծնվել ու մեծացել են: Ինքս էլ չգիտեի՝ ինչո՞ւ էի նրանց վատ օրինակ ծառայում՝ հայոց լեզվով սրամտություններ անելով, ծիծաղեցնելով բոլորին, շփոթեցնելով միսս Չեմբըրլինին: Ինչ է, չգիտեի՞, որ դասաբանում իմ մայրենի լեզվով խոսելը ուսուցիչներս գռեհկություն էին համարում: Իսկ միսս Չեմբըրլինն էլ շփոթվում էր, որովհետև չէր հասկանում՝ ծաղրո՞ւմ էի իրեն, թե ոչ, Եթե ծաղրում էի՝ ինչո՞ւ...

— Ո՛չ, ո՛չ... չենք ծաղրում... Ոնց ասեմ... Ախր մեկ-մեկ շատ ենք ուզում հայերեն խոսել է՛:

— Ինչո՞ւ: Չէ՞ որ սա Ամերիկա է և ոչ թե Հայաստան:

— Ամերիկացիները մեզ չեն սիրում, մենք էլ՝ նրանց:

— Ահա թե ինչ... Իսկ ո՞ր ամերիկացիները ձեզ չեն սիրում:

— Բոլորը:

— Ես նույնպե՞ս:

— Այո, դուք նույնպես:

— Ինչո՞ւ եք այդպես խոսում: Մարդկանց ես սիրում եմ կամ ատում՝ ելնելով նրանց այս կամ այն հատկություններից:

— Դուք ատում եք մեզ, որովհետև չեք ընդունում, որ հայերը որևէ արժանիք ունեն:

— Արժանի՞ք: Չէ՞ որ բոլորը արժանավոր չեն:

— Դուք ճիշտ եք ասում, բայց հայերը... Մի՞թե չեք ընդունում, որ ամբողջ հայությունը հարյուր տոկոսով կատարյալ է:

— Այդպես եք կարծում, որովհետև պարտավոր եք նեցուկ կանգնել միմյանց: Ճիշտ չե՞մ ասում:

— Իսկ դուք... ամերիկացիներդ, նեցուկ չե՞ք կանգնում միմյանց:

— Գուցե... Ի վերջո դա ի՞նչ նշանակություն ունի: Չէ՞ որ սա Ամերիկան է, և բոլորս ամերիկացիներ ենք:

— Ճիշտ է, Ամերիկան է, դուք էլ ամերիկացի եք և ձեր հեչ պետքն էլ չի... Իսկ մենք... Եթե իրար թև ու թիկունք չլինենք, ձեր նման ամերիկացի կդառնանք, այնինչ՝ մենք միայն հայ լինելու իրավունք ունենք: Ես կարո՞ղ եմ գնալ: Ուշանում եմ, լրագիր պիտի ծախեմ:

— Դուք կարող եք գնալ, Սարոյա՛ն...

Իսկ մի քանի օր անց միսս Չեմբըրլինն ասաց.

— Այս ուսումնական տարին ավարտվելուց հետո դպրոցից դուրս եմ գալու: Պիտի ամուսնանամ:

Ուրախացա: Դասերից հետո ինձ չէր պահի. լրագրի արտակարգ համարները չէի հասցնում ծախել ու մի քսան, երեսուն սենթ վաստակել... Նաև տխուր էի, որ այլևս չէի տեսնելու նրան: Զգում էի, որ միսս Չեմբըրլինի հեռանալը մեծ կորուստ է ինձ համար, բայց թե ինչու՝ ինքս էլ չէի հասկանում. չէ՞ որ ատում էի դպրոցը, ուսուցիչներին... Էլ ինչո՞ւ պիտի կորստյան զգացումն այդպես խորն ապրեի: Միսս Չեմբըրլինն զգում էր, որ ատում էի դպրոցը, բայց այն ժամանակ չէի հասկանում, թե ինչ էր կատարվում ինձ հետ. ուղղակի նրա հեռանալու համար և՛ ուրախ էի, և՛ տխուր: Միասին նստում-խոսում, ծիծաղում էինք: Նա ինչ-որ ակնարկներ էր անում, որ, գիտեի, միայն ինձ էին վերաբերում: Երկու անգամ նույնիսկ աչքով արեց ինձ, բայց նույն ձևով չպատասխանեցի, որովհետև **աչքով անել** չգիտեի, բացի այդ, պարտադիր էր, պարտադիր չէ՞ր... Ի՞նչ իմանայի: Նա գեղեցիկ աղջիկ էր, երջանիկ էություն, և

բազմաթիվ տարագիր տղաների և աղջիկների գրաճանաչ դարձնելուց հետո որոշել էր դպրոցից դուրս գալ ու ամուսնանալ: Տարիքն էլ մի բան չէր՝ հազիվ քսանմեկ-քսաներկու:

Բայց ամենալավը միսս Քարմիքըլն էր, որովհետև նա և՛ գեղեցիկ էր, և՛ ջանասեր, ու հրաշալի էր թախծում: Մի օր չափազանց ընկճված ներողություն խընդրեց մեզանից, ասաց, որ նոր է եղբոր մահվան լուրն ստացել: Զոհվել էր Ֆրանսիայում: Վերջին դասի ավարտին 5 րոպե էր մնում, և նա ինձ խնդրեց տուն չգնալ:

Երբ երկուսով էինք, միսս Քարմիքըլն ասաց.

— Ես ձեզ պատժելու համար չեմ պահել, Սարոյան:

Նա նստել էր գրասեղանի մոտ, իսկ իմ տեղը երրորդ շարքի վերջին նստարանն էր՝ դրան մոտ: Շատ հարմար էր. կարողանում էի առաջինը դուրս գալ դասարանից և «Իրվինգ Հերալդի» խըմբագրություն գնալ լրագրեր վերցնելու:

— Ես պիտի Սան Ֆրանցիսկո մեկնեմ,— ասաց միսս Քարմիքըլը:— Իսկ ամառային արձակուրդից հետո երևի ձեզ չտեսնեմ, Սարոյան:

Նա մի պահ հապաղեց, հավանաբար մտածելով, թե ուրիշ ինչ ասի:

— Նախ ուզում եմ ձեզ շնորհակալություն հայտնել, որովհետև միայն դուք հուզվեցիք և հարցրիք. «Ե՞րբ է զոհվել ձեր եղբայրը»: Հետո կուզենայի մի խորհուրդ տալ ձեզ, Սարոյան: Ինձ հայտնի է ձեր ընտանեկան վիճակը: Հետաքըրքըրվել եմ, գիտեմ, որ վատ եք ապրում, բայց շատ եմ խնդրում, արեք այնպես, որպեսզի կարողանաք ձեր ուսումը շարունակել: Դուք կհիշե՞ք, միշտ կհիշե՞ք իմ խորհուրդը…

Ես գլխով արի:



— Ուրեմն՝ մնաք բարով,— ասաց միսս Քարմիքըլը:

Երբ դուրս եկա դպրոցից, ճանապարհին իսկույն որոշեցի՝ առաջին իսկ առիթի դեպքում կհեռանամ: Ինչո՞ւ պիտի ուսումս շարունակեի: Նորի՞ց հիմարություններ լսեի, նորի՞ց զգայի գեղեցիկ շորեր, հավերժորեն փայլուն կոշիկներ հագած հարուստ տղաների վիրավորական ակնարկները: Դպրոցը նրանց համար է: Թող նրանք սովորեն: Ինձ բոլորովին պետք չէ:

Իսկ Մայր Հայաստանի Բիթլիս քաղաքում աղջիկների համար մի վարժարան կար, որ կոչվում էր «Մաունթ Հոլյոկ»: Մայրս, մորաքույրներս, մանավանդ իմ տատ Լուսոն, միշտ հիշում էին այդ վարժարանը և «Մոնթոլլո» էին անվանում: Նրանցից ոչ մեկը չէր հաճախել ամերիկյան բողոքական միսիոներների հիմնադրած այդ քոլեջը: Ոչ մայրս, ոչ էլ մորաքույրներս դպրոց չէին հաճախել, իսկ տատիկներս, թեև գրաճանաչ չէին, բայց հռչակված էին իրենց խելք ու շնորհքով: Հատկապես իմ տատ Լուսոն, որը շատ խելոք էր, և եթե հարկ լիներ ծաղրել կամ մականուն դնել մեկին՝ այդ մարդը կորա՜վ... մինչև կյանքի վերջը այդ անունը պոկ չէր գալիս նրանից: Մականունները, ճիշտ է, մի քիչ դաժան էին, բայց տատս անուն էր դնում հիմար, գոռոզ ու չար մարդկանց: Եթե պատահեր այնպես, որ նա մականուն դներ նաև ազնիվ ու ոչ գրաճանաչ մարդկանց, նրանք երբեք չէին վիրավորվում, ընդհակառակը՝ իրենք էլ էին ծիծաղում:

Մի օր լսեցի, թե ինչպես իմ տատ Լուսոն մեկի մասին ասաց. «Էլ ինչի՞ եք զարմանո՞ւմ... Նա սովորել է Մոնթոլոյում, դրա համար էլ խելք չունի...»:

Ու մտքիցս վերջնականապես հանեցի քոլեջ գնալու ցանկությունս, որ առանց այն էլ չկար:

Ինչ որ է, ես խորապես հուզվել էի միսս Քարմիքըլի հրաժեշտի խոսքերից, նրա ազնիվ խորհուրդներից, ձայնի հնչերանգից, այն խորունկ վշտից, որ ներդաշնակվում էր ի՛մ վշտին, թեև միապաղաղությունը խաթարելու, երեխաներին ծիծաղեցնելու նպատակով երբեմն խանգարում էի նրա դասերը:

Իսկ դրանք հրաշք օրեր էին, որ հիմա չկան այլևս:

Անգլերենից թարգմանեց **ՎԱՆԻԿ ԱՎԵՏԻՍՅԱՆԸ**



**ՄԱՔՍԻՄ ՈՍԿԱՆՅԱՆ**

# ՎԱՐԴԱՆԱՆՔ

Նկարը՝ ԽՈՐԵՆ ՀԱԿՈԲՅԱՆԻ

Երգ Վարդանանց, երգ արական,
երբ գալիս է հոգին ինչպես կրակի կայ
առկայծ, առկայծ
բաժանվելով ամենքին.
և թամբում է իր մանուկ ձին
կապույտ սուսերն հանած ի լուր՝
Ձայն է հանում ժողովրդին,
Ձայն է հանում
Ձիավորված Որդիների բազմաթաքուն
եկեղքում
Ինչպես թռիչքն՝ աղեղնակից,
Թռչում է նա կրակի պես կարմիրկն
թիկնոցի մ
Երկնքի՞ց էր, մա՞րդ էր, թե
Սուր,
Իջնող Հայկի դաստակ ամուր,
Որ թշնամուն Հայրենին է բանախոսու
Մեկ ձախ, մեկ աջ,
Նաև՝ ուղիղն շեշտակի...
Եվ ձին՝ արյան կոհակի մեջ,
Եվ բացվում է վարդը կարմիր
Հայրենի տան,

Եվ հաղթաձայն երգ ու վերքեր,
Եվ երգի պես նա է խրվում մեջ
թշնամյաց՝
Ինչպես կրակ՝ ոհմակի մեջ շնագայլաց...
Ի զեն առաջ,
Քաջերի քաջ,
և Սուրը չի առնում լրում,
և խոսում է ժամանակի երակներում՝
Նախաշավիղ Մեծն Անդրանիկ
շառավիղում՝
Երգ ճեղծողի ունկի համար միշտ
ահագնա,
Արծվենի ու խնկահոտ թռիչքներում՝
Մեկ՝ ձախ, մեկ՝ աջ,
Նաև՝ ուղիղն շեշտակի,
Եվ թռչում է կոչը անմեռ
Ժամանակ ու անժամանակ՝
Որդան կարմիրն արած բանակ...
Եվ դու՝ նույն ցեղի պատանյակ
Եվ քաջ աղջիկ նույն ծաղիկից՝
Եկած որպես որդան բանակ՝
Նույն արմատի աղեղնակից,
Երգիր նման՝ Քաջն ի ուղին,
Եվ սրարշավ՝ թշնամու մեջ,
Չմոռանաս ցավն այն դեղին,
Որ տանջել է մեր ազգն անվերջ՝
Դավերի մեջ խմորողի...
Դավաճանն այն՝ անունն Հուդա,
Որոնման մեջ փառք ու փողի՝
Միշտ մեր անգինն է վաճառել
ավերողին...
Այդպես եղան և Վասակյանք,
Եվ քանի որ
նույն բանն էին ձայնախոսում,
Գտան իրենց փնտրածները
Խաբեական փառքի փոսում:
Բայց դու նետիր ամեն երկմիտն ու
շեղակին
Եվ ունեցիր ուղիղ դիտում,
Ականջ՝ ձայնին քո Հայրենյաց:
Եվ ոսկեբառն այբուբենի ձայնով՝ քեզ
հաց...
Եվ Վարդանի ազնիվ սերումն
ընդունելով,
Դեռ ավելին՝
— Մեկ ձախ, մեկ աջ,
Նաև՝ ուղիղն շեշտակի՝
Մեկ արմատով՝ առավելի...



ԱՂԱՍԻ ԱՅՎԱԶՅԱՆ

# Թոյլերը և թոյլերը

Հայացքս կանգնել էր այդ տողի վրա և առաջ չէր գնում: Իսկ տողը հետևյալն էր. «Եթե մոսկովյան թագավորների տոհմը վերջանա, Գյուրջիստանից կբերեն որևէ իշխանի ու կդարձնեն թագավոր»: Տողը գտնվում էր 18-րդ դարի թուրք ճանապարհորդ Էվլիա Չելեբիի՝ 1983 թվականին Մոսկվայում հրատարակված հատորում: Եվ տողը միջնորմի պես կիսել էր գիրքը: Նրա և՛ այս կողմում, և՛ այն՝ ինձ համար ճերմակ էջեր էին, որովհետև միտքս ուրիշ բանի վրա էր սևեռվել: Ես սուզվել էի մի այլ միջավայր, ուր շրջափակվել էին իմ մանկությունն ու պատանեկությունը, և հիմա, այս երեկոյան, ես պետք է վերջապես հանդիպեի նրան՝ Ֆելիքսին, մշտնջենական կարոտի աշխարհի բնակիչներից մեկին... Նրա կերպարը մինչև այսօր շողշողում էր մանկության երկար կյանքի իրականությունում՝ լինելության խորհուրդն ամփոփելով հուզական մի կծկանքի մեջ... Ֆելիքսը՝ մանկությանս անհամար ցաքուցրիվ պատառներն իրար կարկատող թել ու ասեղը, քաղաքում միակ պատանին՝ ի վերուստ նախանշված իմ գոյությունը լրացնելու համար... Բայց նա՝ շոշափելի ու նաև պատրանք, և՛ իմ կողքին էր, և՛ աստղ էր անհասանելի: Ես նրան իմ մերձավորներից ավելի լավ գիտեի: Նրա անունը, նրա դպրոցը, նրա երթուղին՝ տնից դեպի դպրոց և երաժշտական ուսումնարան: Նա կտորե պայուսակի մեջ տեղավորված իր ջութակը ծնկներին քսելով, զարմանալի զուսպ արժանապատվությամբ քայլում էր փողոցով ու ոչ մի հանդիմանանք չէր առաջացնում իր նկատմամբ: Նա ինքն իր հետ էր, և ես գոյություն չունեի քաղաքում: Դեռ կարճ շալվար էր հագնում՝ տոտերին երկուական կոճակ: Հետո, տարիներ անց, շրջանաձև օձիքով իր թավշյա բաճկոնակով տարբերվում էր մյուսներից: Ես գրադարաններում էի և Քռի ափին, նա՝ իր տանն ու երաժշտական դպրոցում: Եվ ես միայնակ էի այդ մեծ ժամանակի մեջ... Աշխարհի ու իմ անատոմիական քարտեզները երբեմն միահյուսվում էին, նույնանում, գետերի վտակները կցվում էին իմ արյունատար անոթներին, իմ ներսի խելառ խորշակն ու բուքը խճճվում էին մեր գլխավոր փողոցի սաղարթի մեջ: Աշխարհը ինձնից էր սկսվում, Թիֆլիսը ինձնից էր սկսվում, և ես մենակ էի մանկական մեղվանոցում: Ու միայն ջութակը ձեռքին տղայի կերպարն էր արձագանք տալիս, կապում ժամանակի հետ: Տարածության վրա ես զգում էի մեր հոգեհարազատությունը, գտնում իմ բոլոր տվայտանքների պատասխանը և ներդաշնակ աշխարհ դուրս գալու միակ հնարավորությունը: Մի անգամ, նույնիսկ, նրա ճամփան կտրելով, ցցվեցի դիմացը, բայց նա մի փափուկ հայացքով ինձ չտեսավ և շարունակեց իր ճանապարհը: Երբեմն որոշում էի ուղղակի կռվել նրա հետ, ծեծել նրան կամ ծեծվել՝ մի կերպ շփվելու համար, սակայն դա անհնար էր դառնում ամեն անգամ նրան հանդիպելիս: Նրա հանգիստ ու անհաղորդ դեմքի բարյացակամ անտարբերությունը հաղթեցնում էր շրջապատի սրությունները և իմ անճարպիկ կերպարանքը լուծում այդ հարթության մեջ:

Ես իմ շրջապատում մենակ էի, նա իր շրջապատում մենակ էր: Գոնե ինձ այդպես էր թվում քանի դեռ չէի տեսել նրան Արտոյի կողքին: Մի պահ ինձ երևաց, որ նրանք կանգնած են յուրաքանչյուրն իր համար, և միայն ես եմ տեսողական մի շրջանակի մեջ առնում նրանց: Դա մտապատրանքի պես էր, որովհետև գող Արտոյի միայն անվան հիշատակումը հերիք էր, որպեսզի չորանային մարդկանց կոկորդները: Հարևա՞նն էր, դասընկե՞րը... Երկու բառն էլ չէին սազում Արտոյին: Դպրոց նա չէր հաճախում, իսկ տան գաղափարը առնչություն չուներ նրա հետ: Արտոյի խորհրդավոր բնակավայրը առեղծված էր, ֆիզիկական գոյությունից դուրս, ինչպես երկինքը հրեշտակների համար կամ Աիդը՝ Տանտալոսի:*

Բայց, ավաղ, այն կարճ ժամանակահատվածներում, երբ Արտոյի կերպարանքը գծագրվում էր քաղաքում, Ֆելիքսը նրա կողքին էր: Իր դրսևորույթով բոլորովին հակադիր, նա խանդաղատանքով ու հավատարմությամբ Արտոյի անբաժան ուղեկիցն էր դառնում: Երկու ի-

---

* Տանտալոս— ըստ հունական դիցաբանության՝ Զևսի որդին:

բարամերժ անձնավորություն և խառնվածքների անհարիր միատեղում...

Եվ այդպես էլ Ֆելիքսն ինձ համար մընաց տարածության վրա, անծանոթ ու անձեռնմխելի՝ որպես իմ ներշարշարանքի և ներզվարթության պակաս մի բեկոր:

Պատերազմն սկսվեց ու վերջացավ:

Պատերազմի տարիներին բանտում մնացավ Արտոն: Ես մեկնեցի ռազմաճակատ, և ժամանակն այդ ուրիշ զգեստ հագավ՝ կոշտ-կոպիտ, բանվածքը քրքըրված... Նահանջեցին մատղաշ ու նախաստեղծ հույսերը, ու դրանց մեջ՝ Ֆելիքսի լինելության փաստը: Ես հետո միայն, արդեն հասուն մարդ, տեղյակ դարձա ջութակահար Ֆելիքս Չեմբերջյանի մասին, որի աֆիշներին երբեմն-երբեմն հանդիպում էի տարբեր քաղաքներում: Նրա անվան կողքին ավելանում էին կոչումները, և այդպես ընտելացա համբավավոր ու անծանոթ երաժշտի գոյությանն ընդհանրապես, որի ջութակի լոկ մի հնչյունը հազվադեպ ծորտում էր մանկության երկար կյանքը սահմանող ցանկապատի ճեղքերից:

Ու հիմա, Մոսկվայի «Ցենտրալնայա» հյուրանոցի համարում նստած, ես ըսպասում էի ժամիս, որպեսզի գնամ նրա մոտ իր իսկ խնդրանքով: Քառասուն տարի հետո, արդեն մի օտար մարդու մոտ, որ ցանկություն էր հայտնել տեսնել ինձ: Տեսնել միայն այն բանի համար, որ ես թիֆլիսեցի էի, իր ժամանակի վկան:

Նրա կարոտը ժամանակի նկատմամբ ինձ հասկանալի էր: Ժամանակի, որ գլխավոր կերպարն էր մեր կյանքում, իսկ մենք՝ և՛ նա, և՛ ես, ուղղակի այդ ժամանակի փոշին էինք, նրա հանդիսատեսը: Գլխավոր հերոսը, միակ գործող անձը ժամանակն էր, գերակա մի բնույթ, որի գույները փակ աչքերով, ակամա ու լացակումած, առանց դեկի և ուղղության, առանց հետքի ու հիշողության խայտում էին նրա փրփրակոհակներում:

Թիֆլիսը՝ ժամանակի մեջ մի պղպջակ, և մենք՝ տխրադեմ ու զվարճասեր, կարճաշունչ Պիերոներ և Արլեկիններ նրա ներսում...

Իմ սիրելի, իմ ողբերգական, ժամանակի իմ աննշան և մեծ հատված...

Այսպես, աչքս Չելեբիի տողին, միտքըս՝ դեպի հետ ու առաջ, ժամանակի խորհուրդը՝ սպասումի տեսքով...

Նշանակված ժամին մեքենան կանգնեց հյուրանոցի առջև: Վարորդը՝ ճմըրթված մի թիֆլիսեցի, կնճիռների մեջ՝ Խարփուխի ու Հավլաբարի խախտուխանգար, տակնուվրա քուչաները, ինձ աչքով էր անում, ու երևում էր, որ աչքի այդ թարթումը Թիֆլիսի ծնունդն էր և նույնպես ծերացել էր, կորցրել իր իմաստն ու խաղը...

Սև ամպերը իջել էին հարթ խճուղու վրա, ու թվում էր՝ ամեն պահ մեքենան կարող էր խփել, տակը գցել նրանց:

Այն, ինչ իմ գլխում էր, արդեն ոչ մի տեղ գոյություն չէր կարող ունենալ: Ու թերևս դրա համար Ֆելիքսը իր մոտ էր բերում իմ ուղեղում պահված թիֆլիսյան կյանքի հատվածը... Մենք բոլորս արդեն հասել էինք այն գիտակցության, որ յուրաքանչյուր մարդու գլխավոր տեղը իր մեջ է: Եվ եթե իր ներսում տեղ չունի, ապա ինչ տարբերություն, թե որտեղ է գտնվում՝ փոսի՞ մեջ, անապատո՞ւմ, թե՞ Չինաստանի մեծ պարսպից այն կողմ...

Խճուղուց թեքված ճամփան մտավ մերձմոսկովյան ամառանոցային ավանը, ու մեր մեքենան ընթացավ փայտե ցանկապատերի արանքով...

Վարորդ Սերգոյի կիսադեմը ոչ մի կերպ չէր բռնում խստաշունչ կեչիների համաչափ շարվածքին:

Ամպը գրավել էր ամառանոցային փայտաշեն խրճիթը նս: Եվ դուռն ասես բացվեց ամպի մեջ: Սերգոյի հետևից ես ներս մտա, ու իմ դիմաց առաջացավ խոնշորանդամ ու ճարպակալած մի անձնավորություն, որի ներսից, ինչպես ցուցափեղկի փայլատ ապակու հետևից, նայում էր մոմակերպ ու նուրբ, անկախ ու շենշող Ֆելիքսը:

Նա թմրածորեն ժպտաց ինձ և առավ իր մոտ ու փափուկ գրկի մեջ: Վերջապես ես արժանացա նրա ուշադրությանը. հայացքը միայն ինձ վրա, միտքը իմ կողմը... Բայց ես գիտեի, որ նա փարվել է ոչ թե ինձ, այլ թիֆլիսեցուն, իր մանկության երկար կյանքի մի երանգին, առանց կռահելու իմ պատանեկան տառապանքների և կորույսյալ ընկերության մասին:

Սենյակի կենտրոնում՝ բացված մի քանի շիշ Կախեթի գինիով, խրամուլի ձկով, մճադիով, կծու լոբիով ու ջնջղով սեղանը առնված էր մարդկային պատկառելի կերպարանքների օղակի մեջ:

— Թիֆլիսեցիներ են...— ասաց Ֆելիքսը սեղանակիցներին և ինձ միանգամից ներկայացնելով ինչ-որ անհայտ մի երրորդի:

Պատերից կախված բազմաթիվ ջութակների համաքածուն պարուրվում էր մագնիտաֆոնից ելնող դուդուկի հնչյուններով: Մոցարտի վարպետը դուդուկ էր լսում...

Ես նստեցի ինձ առաջարկած աթոռին, սեղանի մոտ ու վարանոտ հայացքով ընկրսեցի զննել դուդուկի քուշուշկի մեջ ընկղմված ներկաներին: Մեկի աչքերը խոնավ էին, մյուսը իր դաջված թանաքանկարով բռունցքը խրել էր ծնոտի մեջ, երրորդը՝ ձեռքերը կրծքին խաչած, դուրս էր նայում, որտեղ ագռավը ուտում իր ձկի պահածո. ուղղում էր թիթեղյա տուփը, կտցահարում ներսը, հետո նորից ուղղում շրջված տուփը և նորից կտցահարում...

Դուդուկը բերում էր Թիֆլիսի փողոցների նեղվածքն ու աղջամուղջը, իրար մեջ գտնելու խորհուրդը, գաջը թափված պատերի աղյուսե կարկատանների տաղտուկը: Դուդուկի հնչյունները խեղճ էին, ծուղա* հագած դուրս էին գնում պատուհանից ու քայլում ձյան վրա, ապա մրսած, կարկամած, թևերը կոխում էին իրենց ծոցը ու ետ նայում պատուհանի կողմը և արդեն ո՛չ ներսում տեղ ունեին, ո՛չ դրսում...

Սեղանի շուրջը տարբեր մարդիկ էին. մեկը փինաչի էր, Յակիմանկայի մի փոքրիկ խցիկում կոշիկ նորոգող, մյուսը բժիշկ էր, երրորդը՝ ֆիզիկայի դոկտոր, պրոֆեսոր: Փինաչին աչքի պոչով ինձ էր նայում և ուզում էր որոշել, թե Թիֆլիսի ո՞ր մասին կարելի է իմ կերպարանքը համարեցնել: Պրոֆեսորի հայացքը հաճախակի իմ կողմն էր թեքվում, ասես ես իր պատանեկության «Սիմպատիա» նաշարանի սեղաններից մեկն էի լոկ: Ես միայն Ֆելիքսն էր տանտիրոջ իր պարտականությամբ հոգածում իմ մասին: Մածունի «լիլան» ձեռքերի մեջ՝ ինչպես նորածնին շոյելով, բազմանշանակ ինձ նայեց և դրեց առջևս: Մեր մանկության մածնի ամանն էր՝ վաճառողի ճիչի վրան դաջված: Եվ քիչ հետո բարետես, բայց հոգնած մի վրացուհի կավե ափսեով բերեց գոլորշախեղդ խինկալու կիտուկը:

Ֆելիքսի ծերությունը իմ մեջ արթնացրեց պատանեկության տարօրինակ տեսակը՝ զարմանալի մեծ մենակությունն ու արձագանքի պես հեռացող աղմկոտ առօրյան:

*Սրածայր հողաթափ



Նկարը՝ ԽՈՐԵՆ ՀԱԿՈԲՅԱՆԻ

— Դուք որտե՞ղ էիք ապրում...—վերջապես հարցրեց նա ինձ՝ իր համար բոլորովին անծանոթ մի մարդու:

— Ձուղուրեթում...— ասացի ես նրան՝ ինձ համար ամենամոտ հիշողությանը, ու հիմա էլ բաժանվեցին մեր մանկությունները օտարության, անհաղորդակցության անջրպետով:

Նա ժպտաց.

— Մենք հեռու ենք եղել միմյանցից... Իմ տունը կենտրոնում էր...

«Ոչ,— մտածեցի ես քաղաքավարի ժըպիտով,— կենտրոնում ես էի ապրում: Եվ ես միշտ քո կողքին էի, քո դիմաց, քեզ հետ... Միայն դու էիր իմ մանկության ընկերը՝ քո կտորեպատ ջութակով, և դու ինձ չես հիշում»:

Ֆելիքսը երկար նայեց դեմքիս սիրալիր ու փափուկ, և նրա սիրալիրությունն էր իմ մենակության անտրամաբան խորհըրդանիշը: Նա իսկապես ինձ չէր ճանաչում: Եվ չմտաբերեց նույնիսկ որպես երբևիցե փողոցում հանդիպած համաքաղաքացու: Նա ներողամտաբար ժըպտաց ու հայացքով ընդգրկեց սեղանի շուրջը հավաքված մնացած հյուրերին.

— Մենք բոլորս այստեղ ենք ծանոթացել...

Կոշկակարը գլուխը տմբտմբացրեց: Ես ևս, հետևելով նրան, գլխով արեցի ու չգիտեի՝ ինչ ասել, պատմել իմ որբացած մանկության, իմ ձեռք չբերած մեծ համակրանքի մասին Ֆելիքսի հետ, բայց այդ ամբողջը հալվեց տարիքի և մաշված փորձի ամեն ինչ ընդգրկող հանդուրժողականության մեջ, ու ես միայն ուզեցի հիշել իրեն ծանոթ մի անուն, որը կարող էր Թիֆլիսը մեզ մերձեցնել:

— Արտոյին հիշո՞ւմ եք...

Ֆելիքսի աչքերը ջերմացան, անհուն մի կարոտ տամուկ շղարշով կոլոլեց աչքահատերը.

— Արտոյի՞ն... Դուք գիտե՞ք Արտոյին...

— Այնպես... հեռվից... Մեկ-մեկ մեր թաղն էր գալիս...

Կոշկակարը, բժիշկը և պրոֆեսորը ոչինչ չէին լսել Արտոյի մասին, ու Ֆելիքսը նստեց իմ կողքին:

«Բայց ինչո՞ւ Արտոն»,— ձանձրախտի բանվածքով միտքը գիշերվա չափիկի պես կիպ նստեց մարմնիս: «Ինչո՞ւ Արտոն... ստահակը, գողը, և ոչ թե ես՝ քո խառնվածքով, քո կողքին... Եվ դու իմ մանկությունը մենակության մատնեցիր... Մեզ նմանները միշտ լրացնում են միմյանց, ու մենք այդքան անջատ էինք իրարից»:

Որպեսզի մասնակից դարձնի պրոֆեսորին ու կոշկակարին հուշերի մեր նյութին, Ֆելիքսը մի քանի զավեշտալի ու դրամատիկ պատմություններ հիշեց Արտոյի կյանքից՝ կրկին ցուցաբերելով իր անձնությունը նրա ստվերի նկատմամբ:

Ես ևս ինչ-որ բան հիշեցի Արտոյի արկածներից:

Հետո լռել էինք մենք բոլորս: Դուդուկի նվագը վերջացել էր, ու հայացքս սառել-մնացել էր ջութակների հավաքածուի վրա:

— Ես շնորհակալ եմ Արտոյին, որ ինձ ուժեղ մարդ լինել սովորեցրեց,— իմիջիայլոց արտաբերեց Ֆելիքսը, ու նրա ասածը՝ պարզ ու հասարակ, ոչ մի բանով չառանձնացավ նրան շրջապատող առարկաներից և այդ օրվա բազմաթիվ խոսքերից:

Իսկ ինձ համար նրա պատից կախված ջութակները մի ակնթարթում դարձան զբոսայգու ավազներում մոռացված մանկական խաղալիքներ: Ստորին շերտերից գոյության ճերմակ սփռոցը պատռեց նախաստեղծ ու բնական իրողությունը:

Ես զգացի նրա խոսքերի իսկականությունը, քանզի ես, ամբողջ պատանեկությունս անցկացնելով կովի մեջ ինքս իմ դեմ, ինձ հակառակը ապացուցելով, լավ չըմբռնելով անհասկանալի ներքին շփոթը, նույնպես ուժեղ լինելու բնազդմունությունն էի սովորում Արտոյից: Եվ ոչինչ չսովորեցի: Ես ուղղակի կենդանի մնացի, իսկ Արտոն մահացավ քսանհինգ տարեկան հասակում: Ու որովհետև ես ապրեցի նրա երկու կյանքը, հաճախ ինքս ինձ իմաստուն էի թվում:

Ֆելիքսը ուժեղ լինել սովորեց: Ենթագիտակցական մի ժպիտ երերում էր իր կաղ ոտքերով. ուրեմն մարդասպանից պետք է ուժեղ լինել սովորել, որպեսզի Մոցարտ և Հենդել հաղթահարե՞ր... Մինչդեռ ոչ՝ մի եզրահանգում չանելով՝ հալվեց խաղաղ հանդարտության մեջ և դուրս գնաց պատուհանից, դուդուկի մաքրած հնչյունների հետևից... Ու կեչիների ձյունոտ սաղարթի արանքներում իրար էին փնտրում դուդուկի անգո ձայները, հուշերի մոլորված պատառիկները և Թիֆլիսի աներևույթ լույսերի առկայծումները...

ԱՇՈՏ ԱՎԴԱԼՅԱՆ



ՄԻՆԱՍ ԱՎԵՏԻՍՅԱՆ. «ԱՇՈՏ ԱՎԴԱԼՅԱՆԻ ԴԻՄԱՆԿԱՐԸ»

●●●

Կանաչների պաղ հայացքների տակ
Անհանգիստ հոգու զնգզնգոցներով,
Ուզում եմ երգին մոտենալ այնպես,
Ինչպես որ սրտին սիրտն է մոտենում:

Ուզում եմ փարվել նրա ձևերին,
Քամիների տաք, տաք գգվանքներով,
Ապրածս նրա ոգուն կտակել,
Չապրածս թողնել առավոտներին:

Քամիների տաք սարսուռը որսալ,
Գետերի հունով ուղարկել հեռուն,
Միտքը կանգնեցնել պատկերների մեջ,
Իսկ երգը հոգուց մաղով գողանալ:

Ուզում եմ երգը ցավերով զուգված,
Հայտնվի կյանքի անդաստաններում,—
Իսկ ես իմ ձայնը կորցնեմ, փռեմ
Ու արևի հետ գտնեմ երկնքում:

Կանաչների պաղ հայացքների տակ
Անհանգիստ հոգու զնգզնգոցներով
Ուզում եմ երգին մոտենալ այնպես,
Ինչպես որ սրտին սիրտն է մոտենում:

# Մեղուն

Մեղուն իջել էր մերկ վարդի վրա,
Մեղուն իջել էր, մեղուն չէր իջել,
մեղուն ուզում էր, մեղուն չէր ուզում,
իր երգը երգի, երգը իմացյալ:

Ու մեղուն թռավ, մեղուն նահանջեց,
մեղուն հեռացավ, մի վարդը ի՞նչ է,
ուրիշ վարդերից նախանաշ բերեց,
մի վարդը ի՞նչ է, մի վարդը՝ խի՞ղճ է:

Տան ճանապարհին աշունը եկավ,
մեղուն մերթ դողաց ու մերթ հապաղեց,
մեղուն իր ճամփին մեծ աստղեր գտավ,
նրանց հետ թռավ, երկինքը պատռեց:

Մեղուն լույսից էր զգեստը կարել,
ասեղնագործված մատներով հույսի,
մեղուն լույսից էր զգեստը կարել,
լույսը ցնորվեց, ու մեղուն հանգավ:

●●●

Եվ այսպես, ահա, երգի բերումով
Ես ընդհարվեցի ժամանակի հետ
Ու նվիրեցի մարմինս բոլոր առավոտներին:
Եվ ես քարի պես մնացի համր,
Քանզի օրենքով մի նվիրական
Նվիրման պահին
Ոչինչի մասին չպետք է խորհես:
Ու երբ լեռներն են մթի մեջ թաղվում
Քայլերով կզգաս բարձրությունը այդ,
Ես նվիրեցի մարմինս բոլոր առավոտներին:
Հույսը, հավատը, սերը ու կամքը—
Երբ իրիկնացան առավոտները,
Արդեն հասկացա առանց տագնապի.
Կյանքի շուրթերը համբուրելուց է,
Որ մեր շուրթերը մնում են կարմիր:

Նկարը՝ ՀՈՎՆԱՆ ԿԱՐԱՊԵՏՅԱՆԻ





# Մանկություն

Մանկությունն է, որ հուշերի շապիկներով պսակազարդ
այցելեց ինձ:
Ես սրբորեն ջնկած բառեր նվիրեցի,
ու վառեցի հիշատակի օրերի մեջ փայլող ջահեր,
ես պարեցի արևելքում հասունացող քամու շուրջը
ու երինջներ արածացնող տղայի հետ համբուրվեցի:

Եկվորն ինքը դուռը բացեց,
ինքը երգեց ճանապարհին հորինած երգ,
արծաթաջուր եղև նրա ձայնի շղթան,
ու կաքավներ թռան իբրև եկվորի նետ:
Ծաղկանկար աչքերի մեջ
հորս դեմքը՝ իբրև երգի թռչացող հանգ,
դանդաղ մարեց,
ասեղնագործ եղավ քամու փոքրիկ դուստրը—
ծաղկանկարը համեմվեց կարմիր գույնով:

Ես գրեցի սիրված բառեր,
նա խաղի մեջ եղավ իշխան,
նա ինձ փակեց լույսերի մեջ,
աղավնիներ ուղարկեց վեր:

Ծոցի ձայնը թարգմանելով, տաք քարերի շուրջը թռավ,
երգի ձայնը փառաբանեց,
ու խռովվեց, երբ նրա մեջ հասունացող պահը տեսա:

Նա ինձ տարավ տաք երկնքով,
հարսանիքներ մտաբերեց
ու լուսնի հետ՝ փախուստի միտքը հղացավ:
Եկվորն անցավ,
եկվորն հիշեց,
իմ անունը արտասանեց փափուկ ձայնով,
արծաթաջուր ցողեց տաքուկ ամպերի մեջ,
արցունքներս թռան իբրև եկվորի նետ:

ԱԼԵՔՍԱՆ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

# Գոռոզ Արա Փոքրիկի արկածները

## ՍԱՐՍԱՓԵԼԻ ԱՆՏԱՌՈՒՄ ԿԱՄ ԴԱԺԱՆ ՀԱՅՏՆՈՒԹՅՈՒՆՆԵՐ

Օ, չի եղել մեր գայլը պղնձյա
Եվ ոչ մարմարիոնյա, և ոչ անգամ քարե...

Ե. ՉԱՐԵՆՑ

**Գլուխ Ա. Այն մասին, թե ինչպես Գոռոզ Արան մի երազ տեսավ իր ծննդյան գիշերը, հետո արթնացավ ու դաշույն ունեցավ:**

Լուսաբացից առաջ, երբ արևի զրնգված հրդեհը հազիվ էր երևում, երբ թաց, անտեր շունը վերջին գիշերահաչի արարողությունն էր կատարում՝ ի պատասխան քաղաքամերձ աքլորների մութն ավետող ավարտական ծուղրուղուի, երբ Արարատ սուրբ լեռան գագաթին պպզած կիսալուսինը թուլայի իր վնգստոցն էր դրել, իսկ Վրկանից ծովը արձագանքում էր այդ վնգստոցին, երբ հողին զարկվելով դեռ չէր փշրվել առաջին երկչոտ շողըն արևի՝ Գոռոզ Արան տեսավ այդ գիշերվա ու ընդհանրապես իր ապրած վեց տարիների վերջին անվտանգ ու առաջին վտանգավոր երազը՝ իմ և ուրիշների պատմություններում այդքան ծամծմված գայլի մասին:

Գայլը վազում էր բաց ձմեռային դաշտով, ու միայնակ գայլի վազքը, չգիտես ումից հալածված գայլի վազքը, որ միայն անմեղ երեխաների երազներում է գիտակցվում, ինչքան էլ տխուր ու անխուսափելի՝ հրաշալի էր, որովհետև անգայլ երազները, տասնյակ տարիներով՝ գաղթական ու թշվառ մեծերի սուտլիկ խանդավառությունը արդեն ժանգոտած եկելնստել են մեր անցյալի վրա, իսկ ձմեռային դաշտում հալածվող գայլի երազը շարունակվում է միայն Գոռոզ Արա Փոքրիկի ավարտվող գիշերվա մեջ, ու փրփուրը՝ գայլի դնչին, գայլի կայծկլտացող աչքերը Գոռոզ Արա Փոքրիկի քնած հոգում բողբոջում էին նաև իբրև խղճահարություն՝ արցունքախառն, ապա իբրև բողոք, իսկ այնուհետև՝ բնավորություն, ու երբ Գոռոզ Փոքրիկը քրտնած արթնացավ փափուկ իր անկողնում՝ ամառվա այդ առավոտյան, նա արդեն նահրյան մոռացված զինվոր էր, ու նրա սիրուն աչքերը մամայի այդքան սիրած ու բյուր անգամ համբուրած աչքերը մի պահ խըլըրշկոտած նայեցին լուսամուտից կախված ալևին, ապա՝ աչքերը աչ ձեռքը գրանցեցին ուսից մինչև ափը, որ բարձի տակ էր ու ամուր սեղմել էր կոշտ ու հարազատ ինչ-որ անհրաժեշտ ճշմարտություն: Գոռոզ Արան ետ քաշեց ձեռքը ու իր ափում սեղմված տեսավ հերոսական ժամանակների նվիրական դաշույնը՝ չգիտես որտեղից, չգիտես ում բերած ու չգիտես ինչու՝ իր բարձի տակ, իր ափում դրած՝ հերոսական ժամանակների նվիրական դաշույնը, որ մի պահ ցոլաց, ու այդ ցոլքն էր, այդ մոռացված ու զսպված ցոլքը՝ վերջնականապես արթնացրեց Գոռոզ Արա Փոքրիկին, ու դաշույն ունենալու դեռ լրիվ չգիտակցվող հրճվանքը քարանձավային ճիչ դարձավ իր շրթունքներին, ու Գոռոզ Արան նետվեց մոր անկողին: Մաման քնած էր, ինչպես այն գիշերը, երբ Գոռոզ Արա Ավագը՝ հայրը, դուրս եկավ տնից ու անվերադարձ հեռացավ՝ հայտարարելով, որ ամեն ինչ կործանվում է, ու մամայի քսանվեցամյա գեղեցկությունը եղինջների մեջ մոլորված ուլի նման սպանդանոց քշվեց՝ այն պարզ պատճառով, որ նահրյան այս տոհմի կանայք անտղամարդ ապրելով՝ մայր են մնում, զինվորի մայր, ու երբ Գոռոզ Արա Փոքրիկը խանդավառ նետվեց մոր անկողին ու ցույց տվեց նվիրական դաշույնը, մաման ազնիվ նահրյան հպարտությամբ զսպեց արցունքները ու համբուրեց որդու ճակատը, օրհնեց ու հաջորդ պահին միայն մաման կարոտով հիշեց նախորդ գիշերվա այն աստվածային պահը, իր ներ-



շնչումը, երբ որդու բարձի տակ էր դնում տոհմական, սառցադաշտերի բը-շած-բերած, հերոսական ժամանակների

Նկարը՝ ՄԻՀՐԱՆ ՔԵՉՕՂԼՅԱՆԻ

նվիրական դաշույնը... Գլուխը մոր կրծ քին՝ Արա Գոռոզն ասաց.
— Ես մի երազ տեսա գայլի մասին: Մեր հայրիկը նրա ետևից է գնացել...
— Գնացել է...
— Գայլին չարերն էին հալածում, ու նա փախչում էր:
— Փախչում է:
— Հետո արթնացա ու դաշույն ունեցա:
— Ունես:
— Որտեղի՞ց...
— Երբ քո գայլը փախչում է, դաշույն պիտի ունենաս...
— Ես ունեմ դաշույն,— ասաց Գոռոզ Արան ու դաշույնը հպեց ատամներին, մետաղը ինչ-որ անծանոթ սարսուռ փաթաթեց նրա մարմնին: Վեր կացավ, ոտքով ցրեց խաղալիքների կույտը, մոտեցավ պատուհանին ու տեսավ առավոտը:
— Մամ, ես պիտի գնամ,— հայտարարեց, շրջվեց, նայեց մորն ու նրան թվաց՝ ահա մերժված խաղալիքների ցավից ուժեղ, ատամի ցավից ուժեղ, իզուր հայրիկին սպասելու ցավից ուժեղ՝ մի ցավ է զգալու: Երբ մայրը լաց եղավ, նա ըզգաց այդ ցավը...
— Մի գնա,— ասաց մայրն այնպես, որ Արա Գոռոզը չուզեց այլևս հեռանալ:— Ես մենակ կմնամ, ինչպես քո երազի գայլը:
— Ես պիտի գնամ... Դու մենակ չես լինի, որովհետև վերադառնալու եմ:
— Երբ դու վերադառնաս, ես հեռու կլինեմ,— մայրը վազեց գրկեց Արա Գոռոզին:
— Ես կգամ քովդ...
Գոռոզ Արան վերցրեց դաշույնն ու հեռացավ՝ առանց ետ նայելու...

**Գլուխ Բ. Այն մասին, թե ինչպես Գոռոզ Արան գորշ գայլերի տեսավ ու առևանգվեց:**

Գոռոզ Արան դեռ իրենց բակում էր, երբ ոհմակը շրջապատեց նրան:
— Դուք գա՞յլ եք,— հարցրեց Արա Գոռոզը:
— Ոչ: Մենք գորշ գայլեր ենք:
— Որտեղի՞ց հայտնվեցիք, այստեղ երբեք գորշ գայլեր չեն եղել:
— Գետի այն կողմից...
— Իսկ որտե՞ղ է դա:
— Ամեն տեղ:
— Ես գայլ տեսա երազումս:
— Երազի գա՞յլ,— ծիծաղեցին,— լավ, քեզ պահիր:

— Շնորհակալություն,— զգացված ասաց Արա Գոռոզը:
— Դու սենտիմենտալ ես,— ժպտացին գորշ գայլերը:
— Ես գնամ...
— Ո՞ւր...
— Չգիտեմ...
— Ինչպե՞ս... Մենք ճամփին Կասպից ծովում լողացանք, հիմա եկել ենք, որ քեզ տանենք...
— Որտե՞ղ լողացաք:
— Վրկանից ծովում:
— Հա՛,— հիշեց Արա Գոռոզը,— ո՞ւր եք տանելու...
— Սարսափների երկիր:
— Որտե՞ղ է դա:
— Ամեն տեղ:
— Չհասկացա,— ասաց Գոռոզ Արան, շրջվեց ու քայլեց առաջ:
Գոռոզ Արան մատները հպեց սառը մետաղին, ժպտաց, ու ասես բյուր մերձավորներ ծննդյան արթիվ նրան նվիրեցին աշխարհի ամենալավ բաները, ասես ինչ-որ մեկը շնչասպառ ընկավ ոտքերի տակ ու ասաց՝ հայրդ վերադառնում է, ասես ինքը միայն երեխա է ու խաղալուց բացի՝ ոչ մի հոգս չունի, ու ամեն առավոտ արթնանում է օրը վայելելու համար, ինչպես գարնանային ցայգալույսին՝ մանուշակը, ինչպես նոր ծընվող թիթեռը, որին հայեցումը հավերժական է թվում, ու խեղճուկրակ այս որդիներին կանչել էր ուզում Արա Գոռոզը.
— Հե՜յ, հե՜յ-հե՜յ, հե՛-հե՛-հե՛-հե՜յ...
Այդ պահին էլ գորշ գայլերը հասան նրան՝ որդիների փոխարեն: Նա շրջվեց, զարմացավ՝ իր տոհմական միամտությամբ չհասկանալով՝ եթե դու վատություն չես անում, ինչո՞ւ են քեզ հետապնդում: Նրան արդեն տանում էին գորշ գայլերը, երբ հայտնագործեց.
— Եթե քեզնից չեն վախենում, ինչ ուզեն՝ կանեն:
Քաղաքի փողոցներով անցնում էր Գոռոզ Արային տանող գորշ գայլերի շարասյուն-ոհմակը:
— Նայեք, այս երեխան խելապակաս է,— ասաց խմիչքի խանութի մոտ կանգնած՝ ժամը 14.00-ին սպասող Պաշտոնյան:
— Ինչ պուճուրիկն է,— ծվծվաց նրա կողքի կինը,— ինչ սիրունիկն է:
— Жалко! Бедные родители!
— Աչքե՛րը,— մլավեց կինը,— ատե-

եե՜մ......

Գոռոզ Արան պինդ սեղմեց ատամնե-րը, որ լաց չլինի։

### Գլուխ Գ. Անտառում։ Առաջին տպավորություններ։

Ամառային կեսօրին անտառին իջել էր դադարը, շոգից գազազած մոծակների օ-դային հարձակումներից բացի ոչինչ չէր խախտում խաղաղությունը, իսկ մերթ ընդ մերթ անցնող թեթև քամին միայն անտառի երեսից մոծակներ էր քշում, ու երբ ինչ-որ երազավախ թռչուն ճչաց խոր-քում, քնած անտառը դժգոհ հազաց, ու այդ պահին, երբ Դադար էր, գորշ գայ-լերի ոհմակը Արա Գոռոզին անտառ բե-րեց, Գոռոզ Արան նայեց անտառին, ու քանի որ մայրը նրան հեքիաթներ էր պատմել ոչ թե չար ու բարի կախարդ-ների, փերիների ու արքայազնի ու ար-քայադստեր մասին, այլ՝ պարտություն-ների, կորուստների, նա փորձեց անտա-ռի խորհուրդը հասկանալ։

Գորշ գայլերը ասացին.

— Ահա, տես...

Ու հեռացան գորշ գայլերը։ Արա Գո-ռոզը մենակ մնաց ծառերի, թփերի, կոճ-ղերի, խոտերի, գվվոցով լռության ու մո-ծակների հարձակումների մեջ։ Օդում թշնամական ինչ-որ բան կար, Արա Գո-ռոզը ծոցից հանեց դաշույնը, ու ամբողջ աշխարհը մթան հետ եկող դավադիր ու հիմար արկած թվաց, նա արեց առաջին ինքնուրույն քայլը անտառում, ու երկրորդ անգամ ճչաց երազավախ թռչունը։

Մի դեղին ծաղկի վրա թևերը բաց ու խուփ էր անում զատիկը, Արա Գոռոզը կռացավ ու զարմացած նայեց։ Զատիկը վերջապես թռավ, թփերի մեջ դավադիր խշխշաց մողեսը, պարծենալով օձային իր խշխշոցով, հետո կանգնեց, մարտա-կան նայեց Արա Գոռոզին ու հանեց լե-զուն։

— Դու ո՞վ ես։

— Գոռոզ Արան։ Ես դաշույն ունեմ։

— Գոռոզարա՞ն... Ստում ես, գոռո-զարանները վաղուց չկան։

— Իսկ ե՞ս...

— Ուրեմն դու միակն ես, վերջինը։

— Ես դաշույն ունեմ։

— Հիմա դաշույնով ոչ ոքի չես վա-խեցնի, հոգումդ պիտի դաշույն ունենաս։

— Չհասկացա,— իրեն բնորոշ անկեղ-ծությամբ ասաց Գոռոզ Արան։

Մողեսը նորից մտավ թփերի մեջ, ու Գոռոզ Արան այլևս երբեք չտեսավ նը-րան։

Անցան ժամեր, ու շոգ, ննջող անտա-ռի վրա իջավ ստվերը։ Գոռոզ Արան հոգնեց թափառելուց։ Նրան արդեն թը-վում էր, թե անտառը դատարկ է, թե սողուններից, բույններից, մոծակներից ու շոգից բացի՝ ոչինչ չկա անտառում, նույ-նիսկ գորշ գայլերն անիրական թվացին, ու տեսնելով ստվերը անտառի վրա, նա պառկեց խոտերին ու քնեց՝ դաշույնը կրծքին սեղմած։

Ահա արթնանալու է անտառը, արթնա-նալու են գազանները, սկսվելու է մի իսկական պատերազմ, թվացյալ խաղա-ղությունը փուչիկի նման պայթելու է, ստորությունները, մատնությունները, ըն-պառնալիքը, բոհ ուժը, դաժանություննե-րը՝ շրջապտույտի նման խուժելու են ան-տառ, խեղճերը, թշվառները, ստրաց-վածները, մատնվածները, լքվածները կուչ են գալու, ու ոչ ոք չի ասելու նրանց. «Եկայք առ իս...»։

Ահա արթնանալու է անտառը, ահա... Քնած Գոռոզ Արա Փոքրիկի լուսե դեմ-քին իջել է արևի վերջին շողը, երբ նա բացի իր սիրուն աչքերը՝ լինելու է ար-դեն հեռու...

Ահա արթնանալու է անտառը, ահա...

### Գլուխ Դ. Զանազան գազաններ։ Չախկալֆեղերացիա։

Գոռոզ Արան արթնացավ ու անմիջա-պես զգաց, որ ինչ-որ բան փոխվել է։

Սկզբում եկան արջերը։ Նրանք շատ սիրուն էին, կոպիտ ու փնթփնթան։ Արա Գոռոզին թվաց, թե արջերից սքանչելի բան չկա աշխարհի երեսին։ Նրանք նըս-տոտեցին Արա Գոռոզի շուրջը ու խոժոռ նրան նայեցին։

— Դու ի՞նչ գործ ունես այստեղ,—

— Ինձ գորշ գայլերն առևանգեցին ու բերեցին,— անկեղծորեն խոստովանեց տղան։

— Ինչո՞ւ էիր տնից դուրս գալիս, որ բերեին,— դժգոհեց մի արջ։

— Որովհետև ես դաշույն ունեմ։

— Պա՜հ, պա՜հ, պա՜հ, էլ ոնց կլինի, իսկ տանկ չունե՞ս։

— Չէ, տանկ չունեմ։

— Միջուկային ռո՞ւմբ։

— Ոչ։

— Դու նացիոնալի՞ստ ես,— կասկա-ծամտորեն հարցրեց արջերից մեկն ու ինչ-որ բան շշնջաց ամենամեծ արջի ա-կանջին։

— Ի՞նչ,— անկեղծորեն զարմացավ Արա Գոողը:
— Նա-ցի-ո-նա-լիստ…
— Չգիտեմ,— խոստովանեց տղան:— Ես Գոողջ Արան եմ:
— Ընը, ասում էի, չէ՞,— հաղթական ասաց նույն արջը…
Գոողջ Արան հասկացավ, որ սրանք շատ տարօրինակ արջեր են, ու զգաց, որ այնքան էլ դուրեկան չեն թվում արդեն:
Այդ պահին եկավ չախկալը: Արջերը խայթված վեր թռան ու զգաստ կանգնեցին:
— Զգա՛ստ,— կանչեց մի արջ:
— Ազատ, նստել,— անտարբեր նետեց չախկալը:
Գոողջ Արան զարմացած նայում էր: Վերջապես չախկալը նկատեց նրան:
— Սա ո՞վ է:
— Գորշ գայլերն են բերել,— ասացին արջերը:
— Ես Գոողջ Արան եմ:
Չախկալը կասկածամտորեն նրան նայեց: Գոողջ Արան զգաց, որ ինքը դուր չեկավ չախկալին, ու չախկալն էլ իր դուրը չեկավ:
— Ի՞նչ է ձեռքիդ,— ճչաց հանկարծ չախկալը:
Գոողջ Արան զայրացավ՝ ինչ իրավունք ունեն սրանք իր հետ այդպես խոսելու, ու մարտականորեն առաջ գալով գոռաց.
— Դաշույն, պա՞րզ է:
Չախկալը ետ նահանջեց: Ոռնոց լըսվեց: Եկան գորշ գայլերը:
— Որտեղի՞ց եք այս ապստամբին գըտել, ինչո՞ւ եք նրան այստեղ բերել…,— չախկալը հարձակվեց գորշ գայլերի վրա:
— Դա անվնաս լակոտ է, բերել ենք, որ հասկանա՝ ինքը բանի պետք չէ,— ծիծաղելով՝ արդարացան գորշ գայլերը:
Արա Գոողը լսեց այս ամենը ու բարկացավ, բայց քանի որ շատ բարեկիրթ փոքրիկ էր, լռեց:
— Ի՞նչ անենք սրան,— հարցրեց չախկալը:
— Ոչինչ,— պատասխանեց մի գորշ գայլ,— սպանել չենք կարող, որովհետև նա մեր հաշվարկման համակարգից չէ, մի քիչ կմնա մեզ մոտ, կտեսնի, որ ինքը ոչնչություն է, ճիճու է, կկորչի-կգնա, հիմար ցանկություններն էլ մտքից կհանի…
Գոողջ Արան արդեն անկարող եղավ զսպել իրեն, դաշույնը ձեռքին հարձակվեց: Բայց ամենամեծ արջը ապտակեց նրան, դաշույնը խլեց ձեռքից, հետո մի անգամ էլ ապտակեց՝ ավելի ուժեղ, Գոողջ Արան հարվածից մի կողմ նետվեց, նա պղտոր աչքերով տեսավ, թե ինչպես են գազանները հեռանում, զգաց, որ ինքն այլևս դաշույն չունի, զգաց, որ գլխի մեջ ժխոր է, ու լաց եղավ…

## Գլուխ Ե. Նոր կրքեր: Առյուծը:

Գիշերվա մի ժամի Արա Գոողը սըրբեց արցունքները: Ինչ-որ բան կարգին չէ, եթե երեխաները լաց են լինում, ու ոչ ոք նրանց չի խնդրում, չի աղաչում լռել, իրենք են ստիպված լռում, ու նըրանց հոգիներում լացը շարունակվում է դեռ երկար, գուցե ամբողջ մի կյանք:
Անտառը լցվում էր իր գիշերային սարսափներով:
Մռնչոց լսվեց: Արա Գոողը ձեռքը տարավ դաշույնին ու հիշեց, որ այլևս դաշույն չունի: Նա երկար էր լաց եղել, միայն կծկվեց ու սպասեց: Մռնչոցը լըսվեց շատ մոտ և ուժեղ:
Արա Գոողի դիմաց կանգնել էր մի տխուր առյուծ: Տղան վեր թռավ: Բայց առյուծը այնքան խեղճ տեսք ուներ, որ Գոողջ Արան չփախավ:
— Մի վախեցիր, ինձնից վաղուց ոչ ոք չի վախենում:
— Գիտե՞ս,— ասաց տղան,— այս անտառում նույնիսկ արջերն են վատ, իսկ ես այնքան լավ բաներ էի լսել արջերի մասին:
— Ոչ ոք էլ վատը չէ, ամեն մեկն իր գործն է անում,— ընկճված ասաց առյուծը:
— Դո՞ւ էլ:
— Չէ, ես մերժված ու խեղճ առյուծ եմ:
— Իսկ ասում էին, թե դու գազանների արքան ես:
— Մերը՝ պետություն է, հանրապետական կարգեր են՝ Չախկալֆեդերացիա:
— Չախկալը ձեր արքա՞ն է:
— Պրեզիդենտը…
— Դա ի՞նչ է…
— Դե, կտեսնես…
— Տեսել եմ արդեն: Արջեր էլ եմ տեսել, նրանք խլեցին իմ դաշույնը: Գորշ գայլերը ինձ այստեղ բերեցին: Նաև…
— Քո անունն ի՞նչ է,— ընդհատեց առյուծը:
— Գոողջ Արա:
— Մի՞թե դեռ այդպիսի անուններ կան:

— Չգիտեմ: Ես որ՝ Գոռոզ Արա եմ:
— Երևի այնպես, խորհրդանշական…
— Չեմ հասկանում,— պատասխանեց Արա Գոռոզը:
Առյուծը քայլեց առաջ: Տղան գնաց նրա հետևից:
— Ուտելու բան չունե՞ս,— ամաչելով հարցրեց առյուծը:
— Չէ, առավոտվանից ես ոչինչ չեմ կերել:
— Իսկ ես վերջին անգամ կերել եմ երկու օր առաջ, չախկալի տարեդարձին,— խզված մռնչաց առյուծը, ու նրանք լուռ քայլեցին:
— Գիտե՞ս, ինձ թվում է, թե անցած գիշերվա իմ երազում ես ոչ թե գայլ տեսա, այլ քեզ,— հուզված ասաց Արա Գոռոզը:
— Ի՞նչ…
Բայց տղան չպատասխանեց, ու առյուծն էլ չկրկնեց իր «ինչ»-ը: Արա Գոռոզը զգաց, որ առյուծի խեղճությունը վիրավորական է:
— Ինչո՞ւ դու բոլորին մի լավ չես ծեծում,— բարկացած հարցրեց տղան:
— Նրանք շատ են ու կյանքն ավելի լավ են հասկանում: Չախկալֆեդերացիան նրանք են…
Աղմուկ լսվեց: Երևացին չախկալն ու մյուսները: Նրանք շրջապատեցին առյուծին ու Արա Գոռոզին:
— Դու դեռ այստե՞ղ ես,— Արա Գոռոզին դիմեց չախկալը:
— Տեսեք,— կանչեց մի գորշ գայլ,— իր նման թշվառ մի ընկեր է գտել:
Առյուծը կախեց գլուխը:
— Ինչո՞ւ ես լռում,— հեծկլտաց Գոռոզ Արան,— ախր դու ուժեղ ես: Ախր նրանք ողորմելի բաներ են:
Առյուծը զարմացած նայեց Արա Գոռոզին ու ասաց.
— Դե լավ… Գոնե մահս արժանավոր լինի… Ես սիրեցի քեզ, Գոռոզ Արա…
Գազանները սկզբում չհասկացան, թե ինչ կատարվեց: Առյուծն ամեհի մի մռնչյուն արձակեց ու նետվեց նրանց վրա: Չախկալը վայնասունը գցեց ու փախավ, մյուսները ետ նահանջեցին:
Առյուծի սիրտը փառավորվեց, ու նա նորից մռնչաց՝ այնքան ուժեղ, որ Գոռոզ Արան հրճվանքով տեսավ գազանների սարսափահար աչքերը:
Բայց մի գորշ գայլ գոչեց.
— Հանուն Չախկալֆեդերացիայի,— ու նետվեց առյուծի վրա, վրա տվեցին մյուս գազանները:
Գոռոզ Արան վազեց առյուծին օգնելու, բայց նորից ուժեղ ապտակ կերավ ու նետվեց հողին, իսկ բարձրանալ չկարողացավ: Նա ուշաթափվում էր, միայն հասցրեց նկատել՝ ինչպես վերադարձավ չախկալը, ինչ-որ բան ասաց, ու գազանները նետվելով առյուծի վրա, մի ակնթարթում խժռեցին:
Արա Գոռոզը ուշաթափվեց…

Գլուխ Զ. Վերադարձ: Քարե հրեշտակը:

Առավոտյան Արա Գոռոզին մոր մոտ բերեցին: Սպիտակ խալաթով ու սպիտակ գլխարկով մի մարդ նրան բարձրացրեց երկրորդ հարկ ու ասաց՝ սպասիր: Գոռոզ Արան զարմացած շուրջը նայեց. որտե՞ղ է ինքը: Ի՞նչ գործ ունի մայրն այստեղ:
Մի ծերունի անցավ հպարտ քայլվածքով ու տարօրինակ բառերով.
— Անագին մարդ ջարդեցինք: Վերջին կռիվը Սարդարապատում էր, լավ կռվեցինք:
Վերադարձավ սպիտակ խալաթավորն ու Արա Գոռոզին տարավ իր հետ: Ինչ-որ դուռ բացեց, տղային ներս հրեց ու հեռացավ: Անկողնին նստել էր մայրը:
Գոռոզ Արան նետվեց մոր գիրկը ու լաց եղավ:
— Եկա՞ր,— հարցրեց մայրը,— եկա՞ր, հերոս:
Արա Գոռոզը լաց էր լինում:
— Դու հաղթեցի՞ր,— փոքրիկին պինդ գրկած՝ ժպտաց մայրը:
— Մա, նրանք խլեցին իմ դաշույնը, մա… մա, նրանք կերան առյուծին, մա, նրանք շատ վատն են, մա… մա…
— Ոչինչ, ճուտիկ, ոչինչ… Հիմա մենք նորից միասին ենք, ճուտիկ…
— Մա, նրանք կերան մեր առյուծին, մա…
— Ոչինչ, ճուտիկ, ամեն ինչ լավ կլինի, ճուտիկ… Նրանք ինձ ասացին, որ դու էլ ես այստեղ ապրելու, ճուտիկ…
— Մա, նրանք կերան մեր առյուծին, մա…
Բացվեց սենյակի դուռը, ու ներս մտան սպիտակ խալաթով ու սպիտակ գլխարկով մարդիկ:
Արա Գոռոզը պինդ կպավ մորն ու քարացավ՝ իբրև հրեշտակ…
Առավոտի արևը խուժեց սենյակ, ու մայրն զգաց, որ մեջքը հաճելիորեն տաքանում է:

**ՌԱՖԱՅԵԼ ԻՇԽԱՆՅԱՆ**
բանասիրական գիտությունների
դոկտոր, պրոֆեսոր

# Արտաշես Երկրորդ և վերջին Արտաշիսյաններ

Հայաստանը անարգված էր Անտոնիոսի անզուսպ փառասիրության և Կլեոպատրայի անգթության պատճառով: Հայքն ավելի նենգ թշնամի, քան Անտոնիոսը, երբևէ չէր ունեցել: Հայոց Արտավազդ թագավորի գլուխը, որ հազարավորների ներկայությամբ չխոնարհվեց մեծապետական թագուհի Կլեոպատրայի առաջ, այդ նույն թագուհու հրամանով կտրվեց և ուղարկվեց մի ուրիշ Արտավազդի: Դա Ատրպատականի տիրակալ, ազգությամբ մար Արտավազդն էր՝ հայոց անհաշտ թշնամին և Անտոնիոսի բարեկամը:

Իսկ մինչ այդ Անտոնիոսը Հայաստանի թագավոր էր կարգել իր և Կլեոպատրայի որդի վեց տարեկան Ալեքսանդրին: Սա ևս ծաղր էր Հայքի նկատմամբ:

Սակայն ինչպես ամեն մի բռնակալ, Անտոնիոսն էլ իր վախճանին հասավ: Հռոմում Անտոնիոսի հակառակորդն էր Օգտավիանոսը: Սա պատերազմ սկսեց Անտոնիոսի և Կլեոպատրայի զորքերի դեմ: Մ. թ. ա. 31 թ. հաղթեց Օգտավիանոսը: Շուտով Անտոնիոսն ինքնասպան եղավ, իսկ Օգտավիանոսը դարձավ Հռոմի կայսր՝ Օգոստոս (սրբազան) անունով: Ինքնասպան եղավ նաև Կլեոպատրան (թույլ տալով, որ օձն իրեն խայթի): Օգտավիանոս Օգոստոսը Եգիպտոսի Ալեքսանդրիայից Հռոմ էր բերել հայոց Արտավազդ թագավորի գերված երկու

Արտավազդ II (իր թողարկած դրամը)






Արտավազդ II-ի դրամի հակառակ երեսը: Գրված է (հունարեն)՝ «Թագավորների թագավոր Արտավազդ»

որդիներին՝ Տիգրանին ու կրտսեր Արտավազդին: Իսկ Արտավազդ թագավորի մյուս որդին՝ Արտաշեսը, ճարպկորեն ազատվել էր Անտոնիոսի ձեռքից: Նա փախել էր պարթևների մոտ: Շուտով Արտաշեսը վերադարձավ հայրենիք: Այդ ժամանակ Հայաստանի վրա ուզում էր

իր իշխանությունը տարածել Ատրպատականի մար Արտավազդը: Արտաշեսը հաղթեց սրա բոլոր զորքերին, իրեն՝ մար Արտավազդին էլ գերի վերցրեց: Ապա՝ մ. թ. ա. 30 թվականին նա դարձավ հայոց թագավոր՝ Արտաշես Երկրորդ արքայից արքա տիտղոսով:

Արտաշես II-ը եղավ հզոր թագավոր: Նա վերականգնեց Հայաստանի ուժերը, վերակազմեց հայոց բանակները: Այս թագավորը Արտաշես I-ի և Տիգրան Մեծի ոգին ուներ և շարժվում էր նրանց օրինակով: Արտաշես II-ը անհաշտ պատերազմ սկսեց հռոմեական զորքերի դեմ: Նա տեսավ, որ իր հոր՝ Արտավազդ II-ի բարեհոգի բնավորությունը չարաշահեց Հռոմը:

Կարճ ժամանակում Արտաշես II-ը կարողացավ լիովին ջախջախել Հայքում գտնված հռոմեական բոլոր զորքերին. ողջ մնացածները մի կերպ փախան Հայաստանի սահմաններից: Արտաշես II-ը Հռոմի այնպիսի անզիջում հակառակորդ էր, որ անգամ Հայաստանի քաղաքներում գտնված հռոմեական բոլոր քաղաքացիներին՝ առևտրականների, արհեստավորների և այլն, դուրս քշեց Հայքից:

Մեծ Հայքի սահմանները կրկին վերականգնվել էին: Արտաշես II-ը նաև որոշ երկրներ գրավեց Մեծ Հայքից դուրս ու կցեց իր թագավորությանը: Այդպես նա Հայքին միացրեց Ատրպատականը, Մարաստանի մի մասը: Ապա Արտաշեսը Հռոմից պահանջեց իր երկու եղբայրներին, բայց Օգոստոս կայսրը հրաժարվեց վերադարձնել: Հռոմն իր նպատակներն ուներ:

Արտաշես II-ի տիրապետությունը




Հռոմեական դրամ, գրված է (լատիներեն) «Հայաստանը պատժված»




Լատիներեն արձանագրություն Հայաստանում

դարձյալ ցույց տվեց, որ երբ Հայքը լավ հարաբերություններ էր պահպանում իր մշտական զորեղ հարևանի հետ, հաջողության էր հասնում: Այս անգամ հարևանը պարթևներն էին:

Հռոմեացիներն էլ էին դա լավ հասկանում, ուստի և նրանք ամեն ջանք գործադրում էին, որ պարթևների ու հայերի մեջ գժտություն առաջ գա: Նրանք նաև աշխատում էին, որ հենց հայերի, ինչպես և պարթևների մեջ երկպառակություն լինի՝ գրգռում էին հայերին հայերի, պարթևներին պարթևների դեմ: Սա Հռոմի քաղաքականությունն էր, որ կոչվում էր՝ «Բաժանիր, որ տիրես»: Այս նշանաբանը գործադրելով էր Հռոմը տիրում աշխարհին:

Հռոմեացիները նախ պարթևների Հրահատ II թագավորի դեմ ապստամբություն կազմակերպեցին, կարողացան իրենց մոտ բերել և որպես պատանդ պահել պարթևների թագաժառանգին: Պարթևները որոշեցին հաշտվել Հռոմի հետ, և մ. թ. ա. 20 թվականին նրանք վերադարձրին Կրասոսի զորքերից որպես ռազմավար խլված արծվակիր դրոշակները ու հռոմեացի գերիներին: Հայաստանը զորեղ Հռոմի դեմհանդիման մնաց միայնակ:

Հռոմեացիները կարողացան նաև Հայաստանում կողմնակիցներ գտնել, նրանց գրգռել Հռոմի անհաշտ հակառակորդի՝ Արտաշես II-ի դեմ: Հայ հռոմեասերները Օգոստոս կայսրից ստանում էին կաշառքներ ու մեծ խոստումներ: Նրանք դավադրություն կազմակերպեցին իրենց Արտաշես II-րդ թագավորի դեմ ու սպանեցին նրան: Այդպես հայերի ձեռքով Հռոմն ազատվեց իր զորքերին սարսափ ազդող հայոց հզոր ու մեծ թագավորից՝ Արտաշես II-ից:

Այդ ժամանակ Հայաստան էր արշավում Հռոմի Տիբերիոս զորավարը: Նրա

հետ էր Արտավազդ II-րդ թագավորի մյուս որդին՝ Տիգրանը, որ 10 տարի դաստիարակվել էր Հռոմում: Օգոստավիանոս Օգոստոսը և նրա օգնականները այն կարծիքին էին, որ Հռոմում մեծացած Տիգրանը կլինի իրենց հլու հնազանդ թագավոր: Եվ Արտաշես II-ի սպանությունն ու նրա եղբոր՝ Տիգրանի թագադրումը նրանք համարեցին Հռոմի մեծ հաղթանակը Հայքի նկատմամբ: Այդ առթիվ Հռոմում հատեցին դրամ, որի վրա գրված էր. «Հայաստանը նվաճված»: Հռոմի բանաստեղծներն էլ փառաբանում էին այդ հաղթանակը: Բայց Տիգրան III-ը այնքան էլ հռոմեասեր դուրս չեկավ, ինչքան կարծում էին: Նա ավելի քան 10 տարի թագավորեց, և նրա օրոք Մեծ Հայքը պահպանում էր իր ամբողջությունն ու անկախությունը: Մեծ Հայքից անջատվեց միայն Ատրպատականը, որ ժամանակին նվաճել էր Արտաշես II-ը:

Տիգրան III-ը նույնպես գիտակցեց, որ Հայաստանի համար կարևոր է բարեկամությունը հարևան պարթևների հետ: Հայքի, Պարթևստանի և մյուս հարևան երկրների ժողովուրդների համար հռոմեական տիրապետությունը խորթ էր և անտանելի: Հարավ-արևմտյան Ասիայի գրեթե բոլոր երկրները հայերի և պարթևների իշխանությունը գերադասում էին Հռոմի դաժան տիրապետությունից:

Տիգրան III-ի մահից հետո, մ. թ. ա. 8 թվականին հայոց թագավոր դարձավ Տիգրան IV-ը, որին գահակից էր իր քույրը՝ Էրատոն: Տիգրան IV-ը նույնպես հմուտ և ուժեղ թագավոր էր, և նրա օրոք ևս Հայքը լիովին անկախ էր ու ավելի հզոր, քան Պարթևստանը: Տիգրան IV-ը ևս ուներ արքայից արքա տիտղոսը: Հայքը գնալով ավելի զորեղ էր դառնում: Եվ եթե հռոմեացիները երազում էին Արևելքում իրենց իշխանության տակ վերականգնել Ալեքսանդր Մակեդոնացու կայսրությունը, ապա հայերն էլ հիշում էին Տիգրան Մեծի կայսրությունը և ձգտում էին վերականգնել այն:

Հռոմի Օգոստավիանոս Օգոստոս կայսրը տեսնելով Տիգրան IV-ի հզորացումը՝ մեծ զորք ուղարկեց Հայաստան: Տիգրան IV-ի բանակը չկարողացավ դիմադրել, հռոմեացիները մ. թ. ա. 5 թվականին մտան Հայք և Տիգրան IV-ին գահընկեց արեցին: Նրա փոխարեն թագավոր կարգեցին Արտավազդ II թագավորի մյուս որդուն՝ Արտավազդ Կրտսերին, որը գրեթե ամբողջ կյանքն անց էր կացրել Հռոմում և էությամբ դարձել էր հռոմեացի՝ օտարախոս, օտարամտած: Հայ ժողովուրդը, հայոց իշխանները մերժեցին, չընդունեցին այս նոր թագավորին: Ծնտով նրան գահընկեց արեցին և կրկին գահ բարձրացրին Տիգրան IV-ին ու նրա քույր Էրատոյին:

Սակայն այս անգամ հյուսիսից Հայաստանի վրա հարձակվեցին լեռնական ցեղերը, և պատերազմում զոհվեց Տիգրան IV-ը՝ հայոց Արտաշիսյան թագավորական տան վերջին թագավորը:

Դրանով ավարտվեց առայժմ մեզ հայտնի հայոց չորրորդ թագավորական տան՝ Արտաշիսյանների իշխանությունը, որը տևեց մոտ 200 տարի: Հայոց հաջորդ թագավորական տունը Արշակունիներինն էր, որոնք հետո ընդունեցին քրիստոնեություն:

Այդպես անցան հայոց պատմության հազարամյակները՝ մինչև մեր թվականության սկիզբը, մինչև քրիստոնեական դարաշրջանը: Որպես ամփոփում՝ հիշենք այդ ընթացքում Հայաստանում իշխած հայոց թագավորական տները, որոնք հայկյան հարստության շառավիղներն էին՝ Կարանի Աննիյա տունը՝ մ. թ. ա. 15—13-րդ դարերում, ժամանակակից՝ Խաթթին, Արամյանները՝ մ. թ. ա. 9-7-րդ դարերում, ժամանակակից՝ Ասորեստանին, Երվանդունիները՝ մ. թ. ա. 7—3-րդ դարերում, ժամանակակից՝ մարերի, պարսիկների և Ալեքսանդր Մակեդոնացու հզոր պետություններին, Արտաշիսյանները՝ մ. թ. ա. 2—1 դարերում, մինչև մ. թ. 1 թվականը, ժամանակակից՝ Սելևկյանների, Հռոմի և պարթևների պետություններին: Արտաշիսյաններից հետո ավելի քան 50 տարի Հայաստանում խառը վիճակ էր: Հռոմը չէր համարձակվում Մեծ Հայքը դարձնել իր մարզերից (պրովինցիաներից) մեկը, այլ ուզում էր, պահպանելով հայոց թագավորությունը, այնտեղ թագավոր կարգել իրեն հնազանդ մարդկանց: Եվ այդ 50 տարվա ընթացքում այդպես էլ անում էր:

63 թվականին հայոց թագավոր դարձավ Տրդատ I Արշակունին: Դրանով սկիզբ առավ հայոց Արշակունիների թագավորական տունը, որը Հայքում իշխեց մինչև 428 թվականը:

(շարունակելի)

## ԱՖԱՆԱՍԻ ՖԵՏ

●●●

Գեղեցիկից են ծնվել աշխարհի
Ամենափոքրն ու մեծը ամենա,
Եվ դու, բարեկամ, իզուր մի փորձիր
Փնտրել ու գտնել սկիզբն ամենա:

Մեծ բան չէ օրը, դարը մեծ բան չէ՝
Անսահմանության դիմաց այս գոյի,
Հոգ չէ, որ մարդը հավերժական չէ,
Ինչ որ հավերժ է՝ այն է մարդկային:

●●●

Անմահ պատկեր է,
Հարազատ ու հին.
Անծայր տափաստան է,
Բոլորած լուսին:

Աստղազարդ գիշեր է,
Ձյուն է ճեփ-ճերմակ
Եվ սահնակի հետքն է
Փախչում միայնակ:

●●●

Այս խոհերը, այս մտքերը
Մի շղթա են անպարփակ,
Եվ հոսում են արցունքները,
Ողողելով դեմքը տաք:

Սիրտն ուզում է, պահանջում է,
Արցունքները՝ զույգ առու,
Ինչ-որ մեկը ինձ կանչում է,
Ո՞ւր է կանչում, արդյոք ո՞ւր:

Ես անզոր եմ ձգտումի դեմ,
Ես չեմ կարող չտենչալ.
Իմ վայելքը այս մտքերն են,
Այս արցունքներն են օրհնյալ:

●●●

Թափառվող ամպեր է
Վեր հանում փոշին,
Հեծյա՞լ է, թե՞ ով է,
Չեմ տեսնում ոչինչ:

Սլանում է մեկը՝
Ձին սանձակոտոր:
Գոնե դու, ընկեր իմ,
Հիշիր ինձ մի օր:



Թարգմանեց ՅՈՒՐԻ ՍԱՀԱԿՅԱՆԸ

Նկարը՝ ԱՆԴՐԱՆԻԿ ԿԻԼԻԿՅԱՆԻ

# ԲԱՐՈՅԱԿԱՆՈՒԹՅԱՆ ԱՅԲՈՒԲԵՆ

— Ներեցեք,— դիմեցի կողքիս կանգնած երիտասարդին՝ ավտոբուսի ելքին մոտենալու համար:

Իսկ մի քանի վայրկյան հետո, երբ քայլում էի մայթով, չգիտես ինչու, աչքերիս առջև կրկին գծագրվեց նրա դեմքը, ու ես ճանաչեցի աշխարհահռչակ հեռուստացույցի... նուացատկորդին: Եվ ինչպես երբեմն պատահում է, մտքիս մեջ ակամայից սկսեցի վերարտադրել մեր «հանդիպման» մանրամասները. ես նրան ինչ-որ բան ասացի, նա էլ՝ ինձ: Ի՞նչ ասացի: «Ներեցեք»: Իսկ նա՞: Նա էլ նույնն ասաց ու շփոթված մի կողմ քաշվեց, որպեսզի ես կարողանամ իջնել ավտոբուսից: Զարմանալի է, երկուսս էլ նույն բառն ասացինք, բայց ես այն շատ հեշտությամբ արտաբերեցի, իսկ նա կարծես մի փոքր անհարմար զգաց: Ինչո՞ւ: Նրա ձայնի երանգում ինչ-որ մեղավորության զգացում կար: Նա զգաց, որ փակել է ավտոբուսի ելքը: Ինքը մեղավոր էր՝ ասաց, ե՞ս ինչու ասացի «ներեցեք»: Այս բառը կարծես ավելի շատ սկսել է գործածվել ոչ թե իսկական, բուն իմաստով, այլ՝ որպես քաղաքավարական ձև: Որպես քաղաքավարական ձև՝ իհարկե, լավ է, բայց ցավալին այն է, որ ոչ քիչ թվով մարդկանց գիտակցության մեջ կարծես սկսել է շղարշվել նրա առաջին, հիմնական իմաստը: Դրանից է երևի, որ այդ բառը հաճախ արտասանում ենք հեշտությամբ: Մինչդեռ մարդն ավելի հեշտությամբ պետք է ներողություն խնդրի հատկապես այն դեպքում, երբ իսկապես ինչ-որ մեղավոր արարք է թույլ տվել: Այնինչ՝ երևի բոլորն էլ նկատած կլինեն, որ շատ մարդիկ դժվարանում են այդ անել հատկապես այն դեպքում, երբ դրա կարիքն իրոք կա, այսինքն՝ մեղավոր են: Որքան են իրարից հեռու «ներեցեք» բառի օգտագործման քաղաքավարական ձևն ու մեղքի այնպիսի խորը գիտակցումը, երբ մարդն ուզում է ներողություն խնդրել մեկ ուրիշ մարդուց: Մարդը ուզում է ներողություն խնդրել: Ինձ թվում է, որ աշխարհում ավելի շատ են այն մարդիկ, ովքեր, ընդհակառակը, չեն ուզում ներողություն խնդրել, և դրա պատճառն ամենևին էլ այն չէ, թե երկրագնդի վրա անսխալ, անմեղ մարդիկ ավելի մեծ թիվ են կազմում, քան սխալականներն ու մեղավորները: Մարդը պետք է ուժեղ լինի, որպեսզի անհրաժեշտության դեպքում կարողանա հաղթահարել իր «ես»-ը և գոնե ներողություն խնդրի իր սխալ արարքի համար:

Իսկ ամենադժվար բանը կյանքում սե-



ԹԱԴԵՎՈՍ ՏՈՆՈՅԱՆ

## Ներողության նշագծին՝ արթմնի և երազում

փական «ես»-ը հաղթահարելն է, ինչը քչերին է հաջողվում: Ահա թե ինչու է ինձ թվում, թե աշխարհում ավելի շատ են այն մարդիկ, ովքեր չեն ուզում ներողություն խնդրել...

Բոլորովին մոռացել էի այս մտածումների մասին, երբ մոտ մեկ շաբաթ անց կրկին տեսա աշխարհահռչակ հեռացատկորդին, այս անգամ արդեն հեռուստացույցի էկրանին, միջազգային մրցումներում: Նա կանգնեց վազքուղակի ծայրին, մի պահ մնաց անշարժ, ապա սկսեց վազել ու արագություն հավաքել ցատկի համար: Եվ թվում էր, թե ամեն ակնթարթ նա վազքուղու վրա հիշում է 8 մ 90 սմ-ը՝ Ռոբերտ Բիմոնին, և իրեն՝ իր 8 մ 89 սմ-ը: 8 մ 89-ը ինքն է, իր «ես»-ը, նա անցյալ տարի կարողացավ կատարել այդ ցատկը: Ու կրկին անգամ նա վազքուղու վրա է, միտքը այնտեղ՝ 8 ու 89-ի և 8 ու 90-ի արանքում կամ գուցե ավելի այն կողմ՝ չէ՞ որ 8 ու 90-նն էլ է ցատկել մարդ արարածը: Ահա, հրվեց վազքուղուց... Օդում է... Ո՞ր կետում վայրէջք կկատարի, կկարողանա՞ հաղթահարել իր «ես»-ը՝ 8 ու 89-ը: Ընկերները նրան կբարձրացնեն ու ձեռքերի վրա կտանեն: Այդպես է. պետք է հաղթահարես սեփական «ես»-դ, որպեսզի քեզ բարձրացնեն ու դու էլ բարձրանաս: Նոր ռեկորդ: Բայց ինչպիսի՞: Իհարկե, հենց այնպես չեն ռեկորդներ սահմանում: Բոլոր ռեկորդները կարևորվում են առաջին հերթին այն բանով, որ մարդը կրկին ու կրկին կարողանում է հաղթահարել ինքն իրեն, կյանքի ինչ-որ նշագծի վրա կանգ

առած իր «ես»-ը: Եվ հեռուստաէկրանի առաջ ինչո՞ւ էր ինձ թվում, որ ինչ-որ տեղ նույնն են սեփական անձի հաղթահարումը ներողություն խնդրելիս ու հեռացատկը: Երևի որովհետև երկուսն էլ ցատկեր են, առաջինը՝ հոգեբանական, երկրորդը՝ ֆիզիկական:

Հոգեբանական ցատկ՝ դեպի քեզանից առաջ. ինքդ քո վրայով: Եվ բարձրանում ես դու ավելի է. բարձրանում քո մեջ ապ-



րող մարդը: Դժվար է այդ ցատկը, անհա թե ինչու աշխարհում ավելի շատ են այն մարդիկ, ովքեր չեն ուզում ներողություն խնդրել: Իսկ հիմա ստացվում է, որ սխալ է՝ ասել «չեն ուզում»: Երևի ավելի ճիշտ է «չեն կարողանում»-ը: Այո, չեն կարողանում: Իսկ կարողանալու համար պետք է ինքդ քեզ թողնես անցած պահի մեջ և հետո կողքից նայես, մի անգամ էլ, ինչպես կինոժապավենի դանդաղ ընթացքի ժամանակ, պարզորոշ տեսնես, թե տվյալ հարաբերության մեջ ով էր մեղավոր՝ դո՞ւ, թե՞ դիմացինդ: Իսկ եթե ինքդ չես կարող կողմնորոշվել, ապա «ժապավենը» պտտիր մեկ անգամ ևս՝ ընկերոջդ կամ մեկ այլ մտերիմ անձնավորության ներկայությամբ: Եթե պարզվի, որ մեղավոր ես, ելիր «վազքուղի» և կատարիր «ցատկը»: Եվ կտեսնես, որ գեղեցիկ ես թռիչքի պահին ու ավելի թեթև ես զգում քեզ: Բայց իմացիր նաև. բոլոր ցատկերը չէ, որ կարող են հաջողությամբ ավարտվել և՛ քեզ համար, և՛ այն մարդու, որից ներողություն ես խնդրելու: Եվ մի կարծիր, թե արհամարհեցին քո անկեղծ ներողությունը: Իհարկե, այդպես էլ է պատահում: Սակայն հիմա դրա մասին չէ, որ ուզում եմ խոսել: Կան վերքեր ու վիրավորանքներ, որոնք իսկապես դժվար է ներել կամ՝ գուցե անհնար: Ես միշտ հիշում եմ Միսաք Մեծարենցի «Մարմնի վերք, սրտի վերք» բանաստեղծությունը.

Մարմնի վերքը ապեղանի ունի բույժ,<br>
Անցնելով նա մոռցուկ կ'ըլլա շատ կանուխ,<br>
Զանգակ չունի նա տխրահունչ, մահագույժ.<br>
Սրտի վերքը մինչ գերեզման երկարած

Նկարը ՀՈՎՆԱՆ ԿԱՐԱՊԵՏՅԱՆԻ

Ողի մ՝ ունի, արցունքներու զերթ մնկ
ուղխ:

Սպեղանին անոր երկինքն է պահված:
Ինչո՞ւ է Մեծարենցը գրել այս տողերը:
Երևի սրտի խորը վերք է ունեցել, որ
մինչև գերեզման տանջել է նրան:

Իսկ ես ինչո՞ւ եմ գրել այս ամենը. հե-
ռացատկորդի հետ պատահական հան-
դիպո՞ւմն էր պատճառը: Ոչ: Ուղղակի
ավտոբուս բարձրանալուց առաջ մեր փո-
ղոցում ես անզգուշորեն վիրավորել էի
մի տարեց կնոջ: Եվ այս խոհերս էլ այն
բանի համար են, որպեսզի փոքր-ինչ
հանգստացնեմ ինքս ինձ: Չէ՞ որ երբեք
չեմ կարողանա ներողություն խնդրել այդ
անծանոթ կնոջից, որովհետև նրան չեմ
ճանաչում, չգիտեմ, թե որտեղ է ապրում,
անհայտ է՝ երբևէ կրկին պատահակա-
նությունը մեզ կհանդիպեցնի՞: Ինչո՞ւ
կոպտեցի նրան: Բարկացած էի: Որտե՞ղ,
ո՞վ էր բարկացրել ինձ: Աշխատավայ-
րում, այն այցելուն: Տեսնես զգա՞ց, որ
ինձ վիրավորել էր...

... Գիշերը երազումս տեսա, որ հե-
ռացատկորդ եմ դարձել: Կանգնել էի
վազքուղու ծայրին, ապա սկսեցի վազել
ու արագություն հավաքելով ցատկեցի:
Օդում էի: Ներքևում նշաձերն էին. ահա
անցա 8 մ 89 սմ-ը, հիմա անցնում եմ
8 ու 90-ի նշագիծը, ահա հետևում մնաց
ստախոսության նշագիծը, ահա նաև նա-
խանձի նշագիծը, և վերջապես ահա կոպ-
տության նշագիծը, որի մոտ կանգնած
էր այն տարեց կինն ու ձեռքը օդում թա-
փահարելով ինձ էր ողջունում... Իսկ հի-
մա արդեն մի քանի երիտասարդներ ինձ
բարձրացնում են վեր, ձեռքերի վրա ու
տանում են: Երևի այն կնոջ թոռներն են:
Ես էլ եմ նրանց հետ ինձ տանում ձեռ-
քերի վրա, ողջունում եմ ինքս ինձ: Մեր
մեջ է նաև Ռոբերտ Բիմոնը, խնդրում
է, որ հեռացատկով պարապեմ: Անցնում
ենք աշխատավայրիս կողքով, բոլոր այ-
ցելուներն ու աշխատողները հեռացատ-
կորդի համազգեստով են: Բարձրանում
ենք ավտոբուս: Բոլոր ուղևորները հեռա-
ցատկորդի համազգեստով են: Հիմա ար-
դեն մեր փողոցում ենք, բոլորը հեռա-
ցատկ են պարապում: Ես երիտասարդ
տղաների հետ ինձ իջեցնում եմ ցած:
Արդեն մի հոգի եմ: Մոտենում եմ տա-
րեց կնոջը և ասում.

— Խնդրում եմ ներեք, ես ձեզ կոպ-
տեցի:

Ու նա ձեռքի ծաղկեփունջը ինձ է մեկ-
նում:

# Կրթօջախները հնօրյա Երևանում

Հայ լուսավորական շարժումը 19-րդ
դարի կեսին ազգային կյանքի, հոգևոր
զարգացման նոր ուղիներ էր փնտրում:
Եվ դպրոցականներն, անշուշտ, պետք է
հանդիսանային այդ զարգացման հիմքը:
Արական գիմնազիան, որ բացվեց,
1832 թ., նախապես գտնվելով Երևանի
բերդի տարածքում, այնուհետև տեղ ըզ-
բաղեցրեց Ս. Սարգիս եկեղեցուն կից
վարձովի տներում: 1843—48 թթ. դպրո-
ցում տեսուչ էր աշխատում հայ մեծ լու-
սավորիչ Խաչատուր Աբովյանը, որի ա-
ռաջ քաշած ուսուցման նոր, առաջավոր
մեթոդները, ազգային լեզվի խորն ու
բազմակողմանի դասավանդումը մեծ շըր-

Ուսուցչական սեմինարիայի շենքը






ջաղարձ էին մեր մանկավարժության մեջ: 1885 թ. գիմնազիան տվեց առաջին շըրջանավարտները: «Եվ այս առաջին ծիծեռնակները գիմնազիայի պատմության մեջ առաջինները կլինեն ոչ միայն ժամանակային առումով, այլև՝ հետագա, մատաղ սերնդի համար փայլուն ընդունակությունների ու վարքի օրինակ կծառայեն»,— կարդում ենք արխիվային փաստաթղթերում: Արական գիմնազիա-

Արական գիմնազիայի շենքը

Ս. Հռիփսիմե օրիորդաց գիմնազիան



յում գոյություն ուներ չորս դասարան, որոնցից մեկը նախապատրաստական էր, իսկ դասավանդման ծրագրում, բացի լեզուներից (հայերեն, ռուսերեն, լատիներեն ու հունարեն), դասավանդում էին նաև մաթեմատիկա, ֆիզիկա, ընդհանուր ու ռուսական պատմություն, կրոն և այլն: Գիմնազիային կից գործում էին երկու գրադարան՝ հիմնակազմ և աշակերտական, որոնց գրապաշարը կազմում էր ավելի քան 13000 կտոր գիրք (1883 թ.): Գիմնազիայում տիրում էր խիստ կարգապահություն, սովորողները ապրում էին հաստատված օրակարգով և կրում հատուկ համազգեստ: Սովորողների թիվը 1909 թ. հաշվվում էր 568 աշակերտ: Երևանի «Արարատ» գրախանութի հրատարակած բացիկում դուք տեսնում եք արական գիմնազիայի շենքը մեր դարասկզբին, որ կառուցվել է նահանգային ճարտարապետ Վ. Օ. Սիմոնսոնի նախագծով՝ 1911—15 թթ.: Այս շենքը գտնըվում է Նազարովյան (ներկայիս Ամիրյան) փողոցում և այսօր տրամադրված է Ավ. Իսահակյանի անվան գրադարանին:

Երևանի մեկ այլ խոշոր ուսումնական հաստատություններից էր Սուրբ Հռիփսիմեի օրիորդաց յոթդասյա գիմնազիան, որ հիմնվել էր 1850 թվականի մայիսին՝ իշխանուհի Ելիզավետա Վորոնցովայի անձնական միջնորդությամբ: Իգական գիմնազիայում դասավանդվում էին նույն առարկաները, ինչ արականում, բացառությամբ մարմնամարզության, սուսերամարտի և որոշ օտար լեզուների: Փոխարենը՝ աղջիկների համար ծրագրում մտցված էին հիգիենա, ձեռագործություն, երաժշտություն և այլն: Արխիվային տըվյալների համաձայն՝ 1917—18 թթ. ուսումնական տարում գիմնազիայում սովորել է 526 աշակերտուհի: Գիմնազիան ուներ նաև գիշերօթիկ բաժին, իսկ շըրջանավարտներին շնորհվում էր տնային ուսուցիչների որակավորում: Գիմնազիայի շենքը, որ նույնպես գտնվում է նախկին Նազարովյան փողոցում, սովետական կարգերի հաստատումից հետո ևս երկար ժամանակ հանդիսանում էր իգական դպրոց (Հ. Հակոբյանի անվան), իսկ այժմ պատկանում է Երևանի պատմության թանգարանին:

Մանկավարժական կարևորագույն օջախ էր նաև 1881 թ. նոյեմբերին բացված ուսուցչական սեմինարիան՝ սկըզբում առաջին և նախապատրաստական, ապա նաև՝ 2-րդ և 3-րդ դասարաններով: Սեմինարիա կարող էին ընդունվել 15—18 տարեկան պատանիները՝ 2-րդ դասարանի ծրագրի սահմաններում հաջող քննություններ հանձնելով: Սովորողների մեծ մասը Հայաստանի տարբեր վայրերի գյուղական ընտանիքներից սերված տղաներ էին, որոնք ուսումնառությունից հետո գյուղական ուսուցչի որակավորում էին ստանում ու լուսավորական նպատակներով մեկնում հեռավոր շրջաններ: Հիմնադրման օրից մինչ 1895 թ. այն տվել էր ընդամենը 123 շըրջանավարտ: Այդ թվի հետ անհամեմատելի է նույնիսկ հաստատության գրադարանի հարուստ գրքապաշարը՝ մոտ 10000 կտոր գիրք: 1882 թ. սեմինարիայի կյանքում արձանագրվեց մի արժանահիշատակ իրադարձություն, որն առաջինն էր նաև Երևանի պատմության մեջ. ստեղծվեց օդերևութաբանական կայան, ուր հաճախակի էին այցելում նաև արական գիմնազիայի սովորողները, այնտեղ անցկացնում պարապմունքներ, հետևում եղանակի փոփոխություններին: Մինչև 1907 թ. ճարտարապետ Բ. Ա. Մեհրաբյանի նախագծով Երևանի ամենաերկար ու ամենաբարեկարգ Աստաֆյան փողոցում (այժմ՝ Աբովյան փող.), կառուցվեց սեմինարիայի շենքը: Ուսուցչական սեմինարիայի շենքը այժմ էլ ամբողջությամբ պահպանված է (ավելացվել է երրորդ հարկ) և լրիվ համապատասխանում է ժամանակի պահանջներին: Այն տրամադրվել է ժողովրդական տընտեսության ինստիտուտին: Այս բացիկում շենքը դեռ «մանկական» տեսքով է՝ երկհարկանի...

Մենք պատմեցինք նախասովետական Երևանի ընդամենը երեք հիմնական ուսումնական հաստատությունների մասին: Սակայն դրանց քանակը քաղաքում զգալիորեն ավելի շատ էր: Նշանակալից դեր են կատարել նաև Ալեքսանդր Առաջինի անունը կրող կանացի գիմնազիան, Նորքի ծխական դպրոցը, Գայանյան օրիորդաց ուսումնարանը և ուրիշներ: Եվ միայն այս հաստատությունները, փողոցներն ու քաղաքի ընդհանուր տեսարանները պահպանող բացիկներն են լուռ հաստատում, որ այժմյան Երևանը ամենևին էլ «մեծ գյուղակ» չէր՝ անկազմակերպ կառույցներով: Այն արդեն ձևավորված քաղաքատիպ ավան էր, կրթական օրինակելի օջախներով:

**ՌԱՖԻԿ ՀԱԿՈԲՅԱՆ**
**ԻԳՈՐ ՋԱՔԱՐՅԱՆ**



# Արեգակնային կատակերգություն

ՎԱՐՈՒԺԱՆ ՆԱԼԲԱՆԴՅԱՆ

Նկարը՝ ՄԻՀՐԱՆ ՔԵՉՕՂԼՅԱՆԻ

Ըստ ավանդության Հին Հունաստանում, Օլիմպոս լեռան վրա ապրում էին աստվածները և նրանց թագավորը, որի անունը Զևս էր: Այդ աստվածները երեխա ժամանակ փախչում էին դասերից, դրա համար էլ մնացել էին կիսագրագետ:

Մի օր արևը խավարեց: Դե, դրանից վախենալու կամ անհանգստանալու կարիք չկա: Հիմիկվա երեխաները, անշուշտ նրանք, ովքեր դասերից չեն փախչում, գիտեն, որ լուսինը պարզապես եկել ծածկել է արևին, իհարկե՝ ժամանակավորապես: Բայց աստվածներն իրար անցան, և թագավոր Զևսը կանչել տըվեց արհեստների ու դարբնության աստված Հեփեստոսին և նրան ասաց.

— Գործիքներդ վերցրու, մի գնա տես՝ էս լույսն ինչի՞ է փչացել:

Հեփեստոսը հրաժեշտ տվեց կնոջը՝ Աֆրոդիտեին, որը սիրո աստվածուհին էր: Նրան ասաց.

— Աֆոն, սիրելիս, ես գնում եմ գործուղում: Դու քեզ լավ կպահես: Տես՝ չքրտնես-մրսես, հիվանդանաս:

Հետո վերցրեց մուրճն ու աքցանը և թռավ դեպի երկինք: Բարեհաջող տեղ հասավ, լուսինը հրեց արեգակի առջևից, հետո էլի ճանապարհ կտրեց և մուրճով արևին խփեց, խփեց դարձրեց խորանարդ: Մինչև նա տուն վերադարձավ, երկրագնդի վրա խելքից-մտքից դուրս բաներ կատարվեցին: Առաջին հերթին արևածաղիկը դարձավ քառակուսի: Մարդկանց զանգերը դարձան խորանարդաձև: Խնձորը, դեղձը, ծիրանը և մյուս մրգերը նույնպես դարձան խորանարդաձև: Սուր անկյունը մոդա դարձավ, և կանայք սրեցին եղունգները, տղամարդիկ՝նայվածքները, երեխաներն էլ սրեցին իրենց լեզուները: Շինարարները սկսեցին տները կառուցել զուգահեռանիստ՝ խորանարդանման: Հերմեսը՝ սուրհանդակների աստվածը, իրար հետևից տարօրինակ լուրեր էր հասցնում: Բան ու գործ թողած՝ մարդիկ ու կենդանիները գլուխները բարձրացրել էին երկինք, որ տեսնեն, թե խորանարդ արեգակը ինչպես է շարժվում, հերթով ցույց տալիս իր սուր անկյունները: Երեխաները օդ էին նետում իրենց խորանարդ գլխարկները և գոռում էին՝ ուռա՜: Հետո ախորժակով ու-

տում էին խորանարդ թխվածքները:
Երբ Հեփեստոսը վայրէջք կատարեց Օլիմպոս լեռան գագաթին և ներկայացավ Զևսին, վերջինս քաշեց նրա ականջից և ասաց.
— Այդ ի՞նչ արեցիր:
— Որ այդքան ճանապարհը կտրել էի, մտածեցի՝ մի քիչ էլ գնամ, փոխեմ արևի դիզայնը:
— Հի՜-հի՜-հի ,— ծիծաղեց Աֆրոդիտեն ամուսնու վրա:
— Ձայնդ կտրի՛ր,— սաստեց նրան Զևս հայրիկը, հետո փնասային հարցրեց,— այդ դիզայն ասածդ ի՞նչ բան է:
— Դե, ո՞նց ասեմ,— փորձեց բացատրել Հեփեստոսը,— որպեսզի ապրանքը հեշտ ծախվի, տուփի վրա նկարում են, տառերը սիրուն են գրում, դիզայն, էլի, չգիտե՞ս:
— Արևը քեզ համա՞ր ապրա՞նք է,— նորից բարկացավ Զևսը:— Արևը արև է, նույնիսկ ժողովուրդներ կան, որոնք նրան պաշտում են:
— Գնդաձև լինի՝ պիտի պաշտեն, խորանարդ լինի՝ պիտի պաշտեն, քեզ համար ի՞նչ տարբերություն,— ասաց Հեփեստոսը:
Սակայն Զևսի զայրույթը հասել էր գագաթնակետին: Նա Հեփեստոսի վզից բռնեց և օդ շպրտեց: Հեփեստոսը չկարողացավ հավասարակշռությունը պահել և ընկավ Կրետե կղզու վրա, ու ոտը ջարդվեց: Այդ օրվանից նա կաղ դարձավ, և Աֆրոդիտեն դրա համար էլ նրան չէր սիրում: Իսկ մյուս աստվածները շատ ծիծաղեցին այդ դեպքի վրա:
Զևսն իր մոտ կանչեց սուրհանդակների աստված Հերմեսին և նրան ասաց.
— Լսել եմ, որ դու հովանավորում ես գողերին և սպեկուլյանտներին:
— Ի՞նչ եք ասում, Զևս քեռի,— բացականչեց Հերմեսը,— զրպարտություն է, ազնիվ առևտրականի խոսք:
— Դե, լավ, քեզ մի կոտրատիր: Խելքի եկ, այ տղա, քեզ համար եմ ասում: Հերիք է պարապ-սարապ ման գաս. լուր ես տանում, լուր ես բերում, իբրև թե գործ ես անում: Ես քեզ հիմա լուրջ աշխատանք պիտի հանձնարարեմ: Ինչ որ պետք է՝ հետդ վերցրու, գնա արեգակը վերանորոգիր, նորից գնդաձև դարձրու:
— Լսո՛ւմ եմ, տեր իմ,— արագ պատասխանեց Հերմեսը և քիչ անց թռավ դեպի երկինք:
Ճանապարհին Հերմեսը մտածում էր.
«Ես Հեփեստոսից ինչո՞վ եմ պակաս; Ես էլ կարող եմ իմ ուզածը անել»:
Իսկ երկրի վրա սպասում էր Զևսը, սպասում էին աստվածները, սպասում էին մարդիկ, որոնց հասել էր արեգակի վերանորոգման լուրը: Եվ, իրոք, արեգակն սկսեց փոփոխվել, դադարեց խորանարդ լինելուց, բայց դարձավ... բրգաձև:
— Գող, ավազակ, սպեկուլյանտ,— Օլիմպոսի գագաթից դեպի վեր գոռգոռաց Զևսը,— այս ջահելներից ի՞նչ օյինբազություն ասես, որ չի կարելի սպասել: Դու տուն կվերադառնաս, չէ՞, ես քեզ ցույց կտամ:
Բայց զայրանալուց ի՞նչ օգուտ: Արևածաղիկը դարձավ բրգաձև: Մարդկանց գանգը՝ նույնպես: Խնձորը, ծիրանը, դեղձը, տանձը և մյուս մրգերը՝ նույնպես: Սուր անկյունը մնաց մոդայի մեջ և նույնիսկ ավելի տարածվեց: Ճինարարներն սկսեցին տաճիքները կառուցել բրգաձևման, Եգիպտոսում, Մեքսիկայում և այլուր զուտ բուրգեր էին կառուցում: Այդ լուրերը, իհարկե, Հերմեսը չէ, որ բերեց:
Նա երկիր չվերադարձավ, փախավ ապաստանեց մի ուրիշ մոլորակի վրա, մինչև կանցներ Զևսի զայրույթը:
Այս անգամ աստվածների թագավորը ոչ մեկին չվստահեց, ինքը վերցրեց գործիքները ու թռավ երկինք: Շուտով ամեն ինչ համարյա դարձավ առաջվա նման: Արևածաղկի բաժակը՝ կլոր, մարդկանց գանգը՝ գնդաձև, խնձորը, ծիրանը, դեղձը և շատ ուրիշ մրգեր՝ նույնպես գնդաձև կամ կլորավուն:
Զևսը գոհ ու ժպտուն վերադարձավ իր գործուղումից և շատ ուրախացավ կլորությունների առատությունից:
Բայց արի ու տես, որ ինչ-որ բան մընաց այդ երկու ավազակների՝ Հեփեստոսի ու Հերմեսի, այդ երկու անպիտանների չարաճճիություններից: Շինարարները շարունակեցին տները սարքել զուգահեռանիստ՝ խորանարդանման, իսկ կըտուրները՝ բրգաձև: Եգիպտոսում, Մեքսիկայում և այլուր մնացին բուրգերը: Նույնիսկ տանձը, ճիշտ է՝ ուզեց նորից կլորանալ, բայց և այնպես մնաց բրգանման:
Էհ, հիմա արդեն չկան հին աստվածները, չկա Զևսը, չկան Հեփեստոսն ու Հերմեսը, բայց մնացին նրանց արկածների հետևանքները: Մնացին երեխաները, որոնք քաջ գիտեն, թե ինչ է արևի խավարումը, և մնաց երրորդ Հ-ի՝ Հեքիաթասացի այս ուրախ պատմությունը:



# ՊԱՏԱՆԻ ՀԱՆԴԻՍԱՏԵՍԻ ԱՐՔԱՅԱԴՈՒՍՏՐԸ

ԳԱՐԵԳԻՆ ԳԵՎՈՐԳՅԱՆ

Դահլիճում արդեն կիսախավար է: Բեմում իրար ետևից սկսում են վառվել գունավոր ցանցկեն լապտերները: Վերևից լուսարձակի կապտավուն լույսի շիթն ընկնում է հենց նոր հայտնված մունետիկի դեմքին: Նա ժպտում է, մի քանի քայլ առաջ է գալիս, հարմար տեղավորվում բեմառաջքում և սկսում պատմել «Արեգնազան» հեքիաթը:

Բեմում դեպքերն հաջորդում են իրար: Եվ ահա մի օր էլ քաջ ու անվախ Արեգնազանը հայտնվում է արքունիքում: Նա շփոթված է թագավորի սրտառուչ ընդունելությունից: Որտեղից-որտեղ հայտնվում է Արքայադուստրը: «Ի՞նչ չքնաղ է»,— մտածում է Արեգնազանը: Իսկ դեռատի Արքայադուստրը ոտից գլուխ չափում է Արեգին և քիչ հետո սկսում է կատակել ու ձեռ առնել նրան. ճռվողում է արտույտի պես, և ծիծաղը նրա նման է զուլալ առվակի կարկաչին: Արեգնազանը սիրահարված է:

Այսպես է սկսվում ներկայացումը, իսկ թե ինչպես է վերջանում, դուք հավանաբար գիտեք, որովհետև կարդացած կլինեք Ղ. Աղայանի այս գեղեցիկ հեքիաթը:

Հաջորդ օրը թատրոնի ճեմասրահում ես հանդիպում եմ Արքայադստերը՝ Երևանի պատանի հանդիսատեսի թատրոնի դերասանուհի Հասմիկ Տեր-Կարապետյանին: Նա անբռնազբոս է, անմիջական, տպավորվող, և մի քանի հարց ու պատասխանից հետո մեր միջև անկեղծ զրույց է սկսվում: Երբ ավարտեց Երևանի գեղարվեստաթատերական ինստիտուտը, Հասմիկը պատանեկական թատրոնի դերասանուհի դառնալու մասին չէր էլ մտածում: Ընդունվեց դրամատիկական թատրոն, բայց այստեղ երկար չմնաց: Ինչ-որ բան կարծես նրան չէր բավարարում, և առանց վարանմունքի տեղափոխվեց Երևանի պատանի հանդիսատեսի թատրոնը:



Լյուսի, «Գարնանը կվերադառնամ»



Նավզիկե, «Եղիցի երկիր»



Նունուֆար, «Արեգնազան»

Հիմա նա պիտի իր խաղով հուզի դահլիճում նստած պատանիներին ու աղջիկներին, իսկ դրա համար հարկավոր է շատ նրբորեն, զգույշ, միաժամանակ՝ վստահ «մոտենալ» նրանց: Հարկավոր է յուրաքանչյուր բեմական իրավիճակում բնական ու ճշմարիտ երևալ, իմանալ՝ որ ներկայացման մեջ ի՞նչ չափով «ազատություն» տալ պայմանական ձևերին, յուրաքանչյուր շարժում ու խոսք պետք է նպատակադիր դարձնել՝ հստակ ու դյուրամատչելի: Իսկ եթե հանկարծ որևէ կեղծ ու անբնական գիծ նկատվեց պատանի հանդիսատեսի կողմից, ապա քո խաղին նա կնայի անվստահությամբ, և ջանքերդ զուր կանցնեն: Ուրեմն, ինչպես կյանքում, այնպես էլ՝ թատրոնում, հարկավոր է ճշմարիտ և անկեղծ լինել, թույլ ու ձևական հնարքներով չխաբել հանդիսատեսին:

Այս ամենը գիտակցելուց է, որ Հասմիկ Տեր-Կարապետյանը իրեն վստահված յուրաքանչյուր դեր «կառուցում է» հատիկ առ հատիկ, շյուղ առ շյուղ, և վերջում իր արտիստական վարպետության շնորհիվ «կենդանացնում» կերպարը: Հասմիկը նախանձելի աշխատասիրություն ունի: Մինչև բեմահարթակ դուրս գալը, բազմաթիվ անգամներ (ոչ միայն թատրոնի փորձերի ընթացքում) ջանասիրաբար, լրջորեն քննում է դերը, կրկին ու կրկին անգամ ճշտում կերպարին բնորոշ այս կամ այն գիծը, և ի վերջո համոզվելով, որ այն պատրաստ է, հանգիստ խղճով հանձնում հանդիսատեսի դատին:

— Աշխատասիրությունը և պահանջկոտությունը արածիս նկատմամբ իմ մեջ դաստիարակել է հայրս,— ասում է Հասմիկը:

Այս ամենի հետ մեկտեղ հայրը՝ անվանի դերասան Ջարեհ Տեր-Կարապետյանը, կարողացել է դստեր մեջ սեր դաստիարակել նաև ընթերցանության նկատմամբ:

— Եթե ուզում ես իսկական արվեստագետ դառնալ, կարդալը ամենակարևոր պայմաններից մեկն է,— ինձ միշտ հիշեցնում էր հայրս: Հիմա եմ լիովին հասկանում, թե որքան շատ բան է տվել ինձ կանոնավոր ընթերցանությունը:

Եվ, անշուշտ, նաև աշխատասիրությամբ ու ընթերցանությամբ ձեռք բերված գիտելիքներն են օգնում նրան վարպետորեն մարմնավորելու այնպիսի կեր-

պարներ, որոնք իրենց գծերով, տարիքային առումով հակադիր են և բոլորովին տարբեր:

Երբ հեռուստատեսությամբ նկարահանվում էր «Եղեգնուհին» հեքիաթը, Հասմիկը պիտի հանդես գար Եղեգնուհու դերում, իսկ չար կախարդի դերը հանձնարարվելու էր մեկ այլ դերասանուհու: Սակայն որոշ դժվարություններ ծագեցին այն պատճառով, որ հեքիաթում կախարդը, եթե հիշում եք, հաճախ կերպարանափոխվում է և դառնում Եղեգնուհի: Այնինչ, իրականում իրար նման երկու դերասանուհի գտնելը այնքան էլ դյուրին գործ չէ: Հասմիկը վստահեցնում է ռեժիսորին, որ այդ երկու դերերով էլ ինքը հանդես կգա: Եվ այսպես, չար ու բարի Եղեգնուհիներին անձնավորողը դառնում է մեկ դերասան:

Իրարից տարբեր, իրենց բնույթով հակասական շատ դերեր է խաղացել Հասմիկ Տեր-Կարապետյանը, և ինչպես ինքն է ասում՝ «Դա ինձ համար դարձել է մի տեսակ ստեղծագործական սկզբունք»: Այ, օրինակ, «Բոռ» ներկայացման մեջ էլ Հասմիկը մարմնավորում է և՛ երիտասարդ, և՛ տարիքն առած, ծերացած հերոսուհիների կերպարները: Նա խաղում է ոչ միայն պատանիների համար, այլև՝ մեծահասակների: Նրա լավագույն դերակատարումներից կարելի է նշել Ալեքսանդրային («Հին տունը»), Իրային («Անտոնը և ուրիշները»), Ջեմմային («Բոռ»), Բրիչկինային «Իսկ արշալույսներն այստեղ խաղաղ են») ներկայացումներից:

Հասմիկ Տեր-Կարապետյանը իր գործին, դերասանական արվեստի գաղտնիքներին քաջատեղյակ դերասանուհի է: Երբ խոսք է լինում դժվար կամ հեշտ դերերի մասին, Հասմիկը վճռականորեն ընդգծում է՝ «Ոչ հեշտ, ոչ էլ դժվար դերեր չկան: Եթե քո առջև կոնկրետ նպատակ ես դնում, ապա առանց քեզ խնայելու պետք է հասնես դրան»: Ամեն գրնով դերը «ենթարկվելը» դերասանուհու արտիստական խառնվածքի բնորոշ գծերից է:

Ինչպես ամեն մի դերասան, Հասմիկն էլ երազած դեր ունի, միայն թե նա մեզ չհայտնեց, թե որն է այդ դերը, բայց Չարենցի խոսքերով ասած՝ դա կլինի այնպիսի մի դեր՝

Որ հմայե երեխային
Ու ծերունու սրտում մնա:

ՎԱԼԵՐԻ ՍԵՅՐԱՆՅԱՆ




Մեր հանրապետության լեռներում ու կիրճերում կան բազմազան ապարներ ու հանքանյութեր, որոնք միմյանցից տարբերվում են ծագմամբ, արտասովոր նախշերով, գույներով, հատկություններով:

Մի անգամ Հայաստանի հյուսիսում՝ Պուշկինի լեռնանցքի տարածքում, գտա մի քար, որի պատմությունը նույնքան հետաքրքիր է, որքան լեռնային յուրօրինակ ապարի կամ հազվադեպ հանդիպող թանկարժեք քարի պատմությունը:

Օրվա վերջին բանվորների հետ անտառից դուրս եկանք հրաբխային ապարներից կազմված քարակղզյակներով մի փոքրիկ բացատ: Այդ քարացցոններից մեկը, որ գտնվում էր բացատի համարյա կենտրոնում, աչքի էր ընկնում համեմատաբար իր խոշոր չափերով և ավելի բաց գունավորմամբ: Հենց այդ պատճառով էլ ուշադրություն գրավեց: Կարկառի շուրջը դրված էին մոխրագույն ապարի ոչ մեծ կտորներ, որոնցից մեկը մայր մտնող արևի ճառագայթներն անդրադարձնում էր ավելի ուժգին, քան մյուսները: Նրա մի կողմը կարծես ծածկված էր կանաչ ապակու բարակ կեղևով: Հետո հաջողվեց գտնել ևս մի քանի այդպիսի կտոր: Դրանք բոլորը, ինչպես և առաջինը, մի-

այն մի կողմից էին «ապակեծածկ»:
Դրանք ֆուլգուրիտի՝ կայծակի հազվադեպ «ինքնագրերի» բեկորներ էին: Ծուտով հալման հետքեր հայտնաբերվեցին նաև բուն քարազանգվածի մեջ: Պարզվեց նաև, որ հալումը տեղի է ունեցել շուրջ 1000 աստիճան ջերմաստիճանի պայմաններում:

Ֆուլգուրիտ բառը ծագում է լատինական «ֆուլգուր»-ից, որը թարգմանաբար նշանակում է կայծակ: Էլեկտրական լիցքից հալված քարերը, գիտնականները անվանում են նաև «ամպրոպային նետեր» կամ «կայծակի ինքնագրեր»:

Բնության մեջ ֆուլգուրիտներ հազվադեպ են հանդիպում: Դրանք շատ փխրուն են, երկարատև հողմահարումից սովորաբար ճաքճքում են և բաժանվում մանր կտորների:

«Ամպրոպային նետերը» հետաքրքիր է նկարագրել անգլիացի նշանավոր բնագետ Չարլզ Դարվինը իր «Բնախույզի ճանապարհորդությունը աշխարհի շուրջը «Բիգլ» նավով» գրքում: Ծուրջերկրյա ճանապարհորդության ընթացքում (1881—1886 թթ.) Մալդոնադո (Հարավային Ամերիկա) քաղաքի մոտակայքի սորուն ավազուտներում նա գտել է մի քանի ֆուլգուրիտ: Դրանք ապակե կոնաձև խողովակներ են, որոնք իրենց ձևով ժենշենի արմատ կամ չորացած բույսի ցողուն են հիշեցնում և տասնյակ սանտիմետրերով խորանում են ավազի մեջ: Օրինակ, Դարվինի հայտնաբերած ֆուլգուրիտը նույնպես ավազների մեջ էր խորացել: Կոնաձև խողովակի ներքին պատը ասես խնամքով ողորկված քվարցե հարթ ապակուց էր, իսկ արտաքին մակերեսին կպած էին մանր ավազահատիկներ: Խողովակի ամենաստորին մասում ճյուղավորվում էին ծռմռված և կարճ ոստերը:

Բազմաթիվ ֆուլգուրիտներ են հայտնաբերվել Կալախարիի (Աֆրիկա) Սահարայի և Լեհաստանի մերձափնյա ավազուտներում (Ստարցինովյում): Քըվարցե այդ խողովակների տրամագիծը հասնում է 6—8 սմ, հաճախ դրանք թափանցիկ են ու բարակ՝ մոտ 1 սմ տրամագծով: Խողովակների պատերը ունեն գրելու թղթի կամ մի փոքր ավելի հաստություն: Լեհաստանում որոշ ֆուլգուրիտների երկարությունը հասնում է 1,5—2 մետրի: Իսկ ահա ամենաերկար ֆուլգուրիտը հայտնաբերվել է Անգլիայում՝ Քամբերլենդի մոտակայքում: Նրա




Ֆուլգուրիտի առաջացման սխեման

երկարությունը մոտ 10 մետր է:

Ֆուլգուրիտներ հանդիպում են, ինչպես նշեցինք, նաև կարծր ապարներում. դրանք սովորաբար նեղ ճեղքվածքներ, խոռոչներ են:

Լեռնային ֆուլգուրիտներ նկատվում են նաև գրանիտներում, անդեզիտներում, բազալտներում, փայլային թերթաքարերում և այլն:

Կայծակի «նախասիրած» վայրերից մեկը Փոքր Արարատի գագաթն է: Ֆուլգուրիտներն այստեղ այնքան շատ են, որ լեռնապարներին տալիս են ապակու տեսք:

«Ամպրոպային նետեր» հանդիպում են նաև Ալպերի ու Անդերի մի քանի գագաթներում:

Ֆուլգուրիտները գիտական մեծ արժեք են ներկայացնում: Եթե արշավների և էքսկուրսիաների ժամանակ ձեզ հանդիպեն ապարի կտորներ, որոնք ծածկված են կանաչ ապակու բարակ կեղևով կամ նման են ավազի մեջ թաղված ապակե ճյուղավորված խողովակների, ընդունեք, դրանք շատ փխրուն են, իմացեք, որ երկրագիտական թանգարանները ձեզնից հաճույքով կվերցնեն կայծակի այդ «ինքնագրերը»:

# ԺԱՄԱՆՑ



1. Հայ գուսան: 2. Սովետահայ նկարիչ: 3. (հորիզոնական) Հայ միջնադարյան բանաստեղծ, աշուղ, նկարիչ: 3. (ուղղահայաց) Հայ գրող: 4. Հայկական օրանուն: 5. Հայ եկեղեցաքաղաքական գործիչ: Հայաստանում քրիստոնեությունը տարածող: 6. Լիճ պատմական Հայաստանում: 7. Հայ բանաստեղծ, արձակագիր: 8. Հին աշխարհի հայ փիլիսոփա, թարգմանիչ, հռետոր: 9. Ազգային-ազատագրական շարժումների օրրան պատմական Հայաստանում: 10 Հայ գուսան: 11. Պաշտամունքային ծառ հին Հայաստանում: 12. Հայագետ, արևելագետ, լեզվաբան: 13. Քաղաք Արևմտյան Հայաստանում: 14. Սովետահայ բանաստեղծուհի: 15. Սովետահայ դերասան: 16. 5—6-րդ դարերի հայ փիլիսոփա: 17. Հողագործական փայտե գործիք Հայաստանում: 18. Հայ նկարիչ: 19. Միջնադարի հայ մեծ մանրանկարիչ: 20. Հովհ. Թումանյանի պոեմներից: 21. Հայ ֆիդայի, ազգային-ազատագրական շարժման հերոս: 22. Երգահան – կատարող Հայաստանում: 23. Բազմածին հանգած հրաբուխ Վանա լճի մոտ: 24. Պերճ Պռոշյանի վեպերից: 25. Ավետիք Իսահակյանի լեգենդներից:

Խաչբառի գաղտնագիրը.

$\frac{1}{5}$ $\frac{21}{5}$ $\frac{16}{5}$ $\frac{17}{3}$ $\frac{6}{3}$ $\frac{10}{3}$ $\frac{14}{9}$

$\frac{15}{1}$ $\frac{18}{5}$ $\frac{16}{3}$ $\frac{25}{3}$ $\frac{24}{2}$ $\frac{21}{2}$ $\frac{14}{7}$ $\frac{9}{2}$ $\frac{22}{5}$

Գաղտնագրի համարիչը ցույց է տալիս հարցի համարը, իսկ հայտարարը՝ պատասխանի համապատասխան տառը: Ճիշտ լրացնելուց հետո գաղտնագրում կընկարդաք հայ ժողովրդական վրիժառուներից մեկի անուն ազգանունը:

Կազմեց ՎԵՐԳԻՆԵ ՄՈՒՐԱԴՅԱՆԸ

ԳԻՆԸ՝ 15 ԿՈՊ. ԻՆԴԵՔՍ՝ 77806

# Երգ մեռնող հայրենասերի

Խոսք՝ Ս. ՇԱՀԱԶԻԶԻ
Երաժշտ.՝ Մ. ԵԿՄԱԼՅԱՆԻ



Ազնի՛վ ընկեր, մեռանում եմ,
Բայց հանգիստ եմ ես հոգով,
Իմ թշնամիքս ես օրհնում եմ,—
Օրհնում եմ քեզ Աստուծով:

Հեռանում եմ, անգի՛ն ընկեր,
Չգնահատված ոչ ոքից.
Բայց հավաստյավ անձնանվեր
Ազգիս մշակ կհաշվիմ:

Ազնի՛վ ընկեր, չմոռանաս.
Անդավաճան ջերմ սիրով
Ես սիրել եմ իմ հայրենիք,—
Գնա՛ և դու նույն շավղով:

Խեղճությունը հայոց ազգի
Կարեկցաբար մտածի՛ր.
Ոսկեգրքույկն Եղիշեի
Քաջ առաջնորդ քեզ ընտրի՛ր:

Այնտեղ սուրբ կրոն, ազգ միաբան
Ազատ կամքով և խղճով.
Այնտեղ Վարդան, անմա՛հ Վարդան,
Յուր խնկելի քաջերով:

Հայրենի՛ք,— սեղան սրբության—
Ես Աստծո առաջև
Շատ կաղաչեմ, շատ կարտասվեմ,
Որ ծագե քեզ նոր արև:

Իմ մտերի՛մ, մահս մոտ է,
Բայց հանգիստ եմ ես հոգով,
Որովհետև խիղճս արդար է,
Ճշմարտության ջատագով:

